# Մ. Տ. ԿԻԿԵՐՈՆԵԱՅ

# ՂԵՂԻՈՍ

ԿԱՄ

# ՎԱՍՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹԵԱՆ

ԱՌ

## Տ. ՊՈՄՊՈՆԻՈՍ ԱՏՏԻԿՈՍ

ԹԱՐԳՄԱՆԵԱՑ

Հ. ԵՓՐԵՄ ՉԱԳՐՃԵԱՆ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

50ր.



Ի ՎԻԷՆՆԱ

Ի ՎԱՆՍ ՊԱՀՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

1852 ՌՅԱ.



Ի ԹԱՐԲԵՆՉԱՆ ԱՒԾԻՐ

ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ

ՀԱՆԴԻՍԻ ՀԱՐՍԱՆԵԱՑ

ԹԱԳԱՏՈՀՄ ԵՒ ԱԶՆՈՒԱԿԱՆ

# ԳՐԻԳՈՐԻԿ ՊԷՅԻ

ԱԼԼԱՀՎԷՐՏԵԱՆ

ի նշանակ

ԽՆԴԱԿՑՈՒԹԵԱՆ

ԸՆԾԱՅԻ

ՈՒԽՏ ՄԽԻԹԱՐԵԱՆ

Ի ՎԻԷՆՆԱ


Զհոյակապ քաղաքին զՀիւ-
պատն քաջանուն , յայտա-
րար իմոյ ցնծալից ուրախու-
թեան քեզ , Վոնջ , յղեմ ։
Զջերմեռանդն իմ զերձս փո-
խանակ ընդ իմ սա քեզ
բարբառեսցի ։ — Կացցէ ան-
թարշամ յամայր ամս պսակն
բոլորաձեւ՝ զոր այսուր քո
գագաթն ընդունի ։ Ցամա-
խեսցին փառք Արամայ՝ ի յա-
ճախել քոց ծննդոց , զոր եւ
մաղթէ Ուխտս , Լինել քեզ
ի հազարս եւ ի բեւրս ։

# Մ. Տ. ԿԻԿԵՐՈՆԵԱՑ

# ԼԵԼԻՈՍ

## ԿԱՄ

# ՎԱՍՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹԵԱՆ

## ԱՌ

# Տ. ՊՈՄՊՈՆԻՈՍ ԱՏՏԻԿՈՍ

—



## Ա

ԿՈՒԻՆՏՈՍ Մուկիոս հաւատէտ բազում ինչ զԿ. Լելեայ զեւրանէ աներոյն քաղցր եւ հեշտական բանիւք սովոր էր պատմել, եւ ոչ դանդաղէր յամենայն խօսս իմաստուն զնա անուանել: Այլ զկնի այնպէս յանձնարար հայր իմ առ Սկեւողա, յորժամ զառնացի պատմուճանն առի[1], զի որչափ ձեռնհաս իցեմ, եւ պատշաճ իցէ, չհեռանայցեմ ամենեւին ի ծերոյն: Նմին իրի բազում ինչ ի նորա ճառիցն՝ զոր մեծաւ իմաստութեամբ բարբառէր, եւ ի բանիցն՝ զոր դիպողագոյնս եւ կարճառօտս ասէր, ժողովեալ պահէի ի մտի իմում, եւ ջանայի իսկ մեծաւ փութով եւ հոգաբարձութեամբ տեղեկագոյն նորա իմաստութեամբն լինել: Իբրեւ նա մեռանէր, յարուցեալ գնացի առ Սկեւողա քրմապետ, զորմէ իշխեմ ասել թէ գեր ի վերոյ քան զամենայն քաղաքացիսն իւրովն հանճարովն եւ արդարութեամբն է: Այլ զսմանէ յայլում ժամու ասասցուք. աւն առ այժմ առ հաւատէտ անդր դարձցուք:

Որպէս բազում անգամ զբազում ինչ գործս նորա յիշեմ, նոյնպէս եւ այս եւս յուշ լինի ինձ, եթէ մինչդեռ բազմեալ էր նա ի տան ըստ իւրում սովորութեան ի սրա-

հի խորհրդեանն, յորժամ եւ ես ընդ նմա էի, եւ սակաւք եւս ի մերձաւոր բարեկամացն, յայն բան եկն՝ որ յայնժամ գրեթէ յամենեցունց բերանս կայր։ Քանզի յիշես, Ատտիկէ, զի կարի ընտանի էիր Պ. Սուղպիկեայ (որ մինչ ռամկապետն էր, սաստիկ հակառակութեամբ էր ընդ Կ. Պոմպէի՝ որ բդեաշխն կացեալ էր ի ժամանակին, ընդ որում երբեմն կարի ընտանութեամբ եւ սիրով էր,) թէ որչափ ինչ զարմանք յայնժամ մարդկանն էին, եւ քանիօն տրտունջքն։

Վասն որոյ Սկեւողա իբրեւ զայս յիշեաց, եդ մեզ առաջի զխօսսն Լեղեայ՝ զորս ընդ նմա եւ ընդ միւսում փեսայի իւրում Գ. Փաննեայ որդւոյ Մարկոսի Փաննեայ վասն բարեկամութեանն խօսեցեալ էր յետ սակաւ ինչ աւուրց Ափրիկանեայ մեռանելոյ։ Օվծիւս նորա ճառիցն կալայ ի մտի, զորս ըստ պայմանի իմոց բանից յարդարեալ, կարգեալ եդի ի մատենիս յայսմիկ։ Քանզի նոցին իսկ ետու բարբառել, զի մի յաճախագոյնս երկրորդիցեմ թէ Ասացի կամ Ասաց, եւ որպէս թէ նոքին մօտ հասեալ խօսիցին առաջի։

Եւ քանզի յաճախ խնդրեցեր յինէն, զի զբարեկամութենէ գրիցեմ ինչ, արդարեւ արժանաւոր ամենեցուն գիտութեան եւ մերում մերձաւորական ընտանութեան ինձ իրքն թուեցան։ Գմին իրի իսկ յօժարագոյնս եւ կամակարագոյնս զնոյն արարի, զի քո խնդրուածովք եւ բազմաց եւս յօգուտ եւ ի շահ լինիցիմ։ Այլ որպէս ի Կատոն երէց՝ որ է գրեալ առ քեզ զծերութենէ, զԿատոն ածի կացուցի ի մէջ, զի զծերութենէ ճառիցէ. քանզի չերեւէր ոք քան զնա պատշաճագոյն զայնմ տիոց ճառելոյ. որ բազում ժամանակս ի հասակի ծերութեան եկաց, եւ ի նմին առաւել քան զայլսն ծաղկեալ պայծառացաւ. նոյնպէս, քանզի ուսաք ի հարց եւ ի հաւուց մերոց եթէ Գ. Լեղեայ եւ Պ. Սկիպիոնեայ ընտանութիւնն կարի իսկ արժանի յիշատակաց իցէ, պատշաճագոյն ինձ Լեղիոս թուեցաւ, զի խօսիցի զբարեկամութենէ զայն ինչ՝ զորմէ յիշատակէ Սկեւողա թէ խօսեցաւ նա։ Այս ազգ բանից՝ որ հաստատեալ ի ճոխութիւն նախնեաց է, աւելի իմն զօրութիւն ունի. վասն որոյ եւ ես մինչ զիմ իսկ ճառս ընթեռնուցում, այնպէս իմն երբեմն

միտքս յուղէն, զի համարիմ թէ ոչ ես ինչ, այլ ինքն իսկ Կատոն բարբառիցի։

Եւ որպէս յայնժամ առ ծերդ ծերս զծերութենէ գրեցի, նոյնպէս եւ ի սմին մատենի առ բարեկամդ բարեկամս զբարեկամութենէ գրեմ։ Յայնժամ Կատոն ճառարկեալ խօսեցաւ, քան զոր գրեթէ չէր ոք ծերագոյն եւ իմաստնագոյն ընդ այն ժամանակս. այժմ Գ. Լեղի՝ որ ոչ միայն իմաստուն է, որպէս եւ համարեցաւն իսկ, այլ եւ բարեկամութեան փառօքն պայծառագոյն, զբարեկամութենէ ճառէ։ Կամիմ զի դու վայրիկ մի զմիտդ յինէն ի բաց դարձուցանիցես, եւ համարիցիս եթէ ինքն իսկ Գ. Լեղի խօսիցի։ Գ. Փաննիոս եւ Կ. Մուկիոս եկին առ աներն իւրեանց յետ Ափրիկանեայ մեռանելոյ. տոքա սկիզբն առնեն բանին, տայ պատասխանի Գ. Լեղիոս, որոյ ողջոյն իսկ բանքն զբարեկամութենէ են. զոր յորժամ ընթեռնուցուս, անձամբ յանձնէ զչափ անձին քո առնուցուս։



Բ

ՓԱՆՆԻՈՍ. Արդարեւ այդ այդպէս է, Գ. Լեղի, քանզի չեղեւ ոք ուրեք ազնուագոյն եւ պայծառագոյն քան զԱփրիկանոս։ Բայց սակայն պարտ եւ պատշաճ է քեզ համարել այնպէս, եթէ ամենեցուն աչք ի քեզ հաստատեալ իցեն, զքեզ միայն իմաստուն անուանեն, եւ համարին իսկ այնպէս։ Զայս անուն Կատոնի երիցու միայն ետուն. գիտեմք իսկ քաջ եթէ եւ զԳ. Ատիղիոս հարքն մեր իմաստուն անուանէին. այլ զերկոսին եւս այլազգագոյն օրինակօք։ ԶԱտիղիոս վասն այնորիկ՝ զի կարծէր իմն թէ ի քաղաքային իրաւունս իմաստուն իցէ. իսկ զԿատոն յայն սակս, զի բազում ինչ իրաց տեղեակ էր այրն, եւ զի ի ծերակուտին եւ ի հրապարակս բազում եւ ազգի ազգի իրս գուշակեալ էր, կամ մեծաւ հաստատութեամբ եւ պնդութեամբ ի գլուխ հանեալ, եւ կամ անհնարին կորովութեամբ արարեալ պատասխանի։ Նմին իրի իսկ զիմաստունն անուն իբրեւ յորջորջանս իմն ի ծերութեանն ժամանակի յանձին իւրում բարձեալ բերէր։ Եւ դու այլով իմն օրինակաւ իմաստուն իցես. ոչ հանճարով միայն եւ բարոյիւք, այլ եւ ուսմամբն եւ գիտութեամբ։

Այլ ոչ հանգոյն խառնաղանճ ռամկին, այլ որպէս գրագէտքն եւ բազմահմուտք իմաստուն զքեզ անուանեն, որպէս զի չիցէ ոք այնպիսի ի համօրէն Յունաց աշխարհին. զի որ զայսպիսի ինչ իրս բազում հաւաստեաւ խնդրիցեն, զանուանեալ եւթն իմաստունսն ոչ ի թիւ ի համար իմաստնոցն խառնեն։

Լուեալ իսկ եմք եթէ մի ոք եւեթ լեալ իցէ յԱթենացւոց քաղաքի, որ եւ Ապողոնեայ եւս պատգամօքն իմաստուն քան զամենայն մարդիկ համարեալ իցէ[2]։ Զնոյն իմաստութիւն համարին թէ իցէ ի քեզ. զի զամենայն ինչ որ քեզն պատշաճ իցէ, յանձին քում դնանես, եւ զպատահարսն մարդկեղէնս չնչին եւ խոտան քան զառաքինութիւն համարիս[3]։ Վասն որոյ խնդրեն ինձ յինէն, եւ որպէս ինձ թուի եւ ի Սկեւոլայ եւս, թէ զիարդ Աֆրիկանեայ մահուանն տանիցիս. եւ առաւել վասն այնորիկ զի ի մօտաւոր Նոնոնսն յորժամ ի Դ. Բրուտեայ հաւադիտի բուրաստանն եկաք ըստ սովորութեան, վասն զիրաց ինչ խորհելոյ, դու չէիր անդ, որ սովորն էիր գալ անդր հանապազ, եւ զնոյն գործ վճարել։

ՍԿԵՒՈԼԱ. Հարցանել հարցանեն բազումք, Գ. Լելի, որպէս Փաննիոս ասաց. այլ ես զայն ինչ զոր ի միտ առի, տամ պատասխանի, թէ դու ցաւոցն՝ որում մահ առնն երեւելւոյ եւ քո բարեկամի պատճառք եղեն, չափով իմն եւ զգաստութեամբ լինիցիս ժուժկալ. (քանզի եւ չէր իսկ մարթ չխանդաղատել ընդ այն, զի եւ ոչ այն քո մարդասիրութեան էր.) եւ ոչ առ տրտմութեան ինչ չեկիր ի մեր ժողովն, այլ վասն խօթութեանն։

ԼԵԼԻ. Արդարեւ յիրաւի իսկ, Սկեւոլա, ճշմարտութեամբ ասես. քանզի չէ իսկ ի դէպ վասն կորստեան ինչ իրիք՝ որ ինձ եհաս, ի պատշաճ պարտուցն պակասեալ գտանել, զոր բազում հոգաբարձութեամբ վճարէի մինչդեռ ողջն իսկ էր. եւ թուի ինձ թէ չէ մարթ առն հաստատնոյ դիպօք ինչ դիպելովք դադարել եւ կասել յիւրոց պաշտամանց։

Այլ դու, Փաննիէ, որ ասեսն թէ այնչափ մեծամեծար պատուով զիս մեծարիցեն, որչափ ես չճանաչեմ ինչ եւ չխնդրեմ իսկ, գործ բարեկամութեան գործես. բայց

սակայն ինձ այսպէս թուի, եթէ ոչ ուղղագոյն ինչ զԿատոնէ խորհիցիս։ Զի կամ չեղեւ ոք իմաստուն երբեք, որ ինձ առաւել հաւանութեան թուի, եւ կամ թէ եղեւ ոք ուրեք, սա իսկ է։ Քանզի զհայրդ, թող զայլսն, ժուժկալ տարաւ նա մահուան որդեկին։ Յուշ ածեմ զՊաւղոս, եւ զԳաղղոս քաջ գիտեմ. այլ սոցա որդիքն ի տխեղծութեան եւ ի մատաղական տիս հասանէին, իսկ Կատոնի որդի՝ այր կատարեալ եւ պատուական էր։ Այդ վասն զգոյշ լեր, մի մեծարոյ զոք քան զԿատոն համարիցիս. նա եւ ոչ զնա եւս՝ զոր Ապողոն, որպէս դուք ասէք, քան զամենայն մարդիկ իմաստնագոյն դատեցաւ. քանզի սորա գործքն, այլ նորա բանքն եւեթ մեծարեալ գովէին։



Բայց դուք, քանզի եւ երկոցունց եւս խօսել կամիմ, զինէն այսպիսի ինչ ածէք զմտաւ։

Ես եթէ յուրաստ ինչ լինիցիմ եւ ասիցեմ, թէ չյուզիմ անձկովն Սկիպիոնեայ, տեսանիցեն իմաստունքն թէ քանիօն ճշմարտութեամբ զայն առնեմ. այլ արդարեւ սուտ խօսիցիմ։ Քանզի յուզիմ եւ շարժիմ վասն յայնպիսի բարեկամէ զրկելոյ, որում, որպէս կարծեմն, չլինիցի ոք նմանագոյն. եւ մարթ իսկ է ասել հաստատութեամբ, թէ եւ եղեւ իսկ ոչ երբեք։ Բայց սակայն ոչ դարմանովք ինչ կարօտանամ, անձամբ զանձն սփոփեմ, եւ առաւել այնու իմն մխիթարութեամբ, զի չունիմ զայն մոլորութիւն՝ որով բազումք ի մեռանել բարեկամացն նեղեալ տագնապին. զի համարիմ իսկ այնպէս թէ ոչ չարիք ինչ հասեալ իցեն Սկիպիոնեայ. եւ եթէ եհաս եւս ինչ՝ ինձ եհաս։ Այլ վասն իւրոց վշտացն սաստիկ տառապել ոչ եթէ ի կարի զբարեկամն սիրելոյ լինիցի, այլ առ ի բազում գութ ընդ իւր անձնն ունելոյ։

Եւ արդ ո՞ ոք չառնուցու յանձն թէ բազում փառաւորութիւն էր առնն։ Քանզի բաց յանմահութենէն՝ որում եւ ցանկայր իսկ ոչ, ի՞մ իմիք չեհաս նա՝ ուրում ի դէպ եւ վայելուչ իցէ մարդկան ցանկանալ։ Որ զմեծ յոյս ակնկալութեան իւրոց տոհմային քաղաքացեացն՝

զոր անդստին ի մանկութենէ նորա զնմանէն ունէին, անցուցանէր զանցուցանէր իւրովն հանապազորդ եւ չհաւատալի առաքինութեամբն։ Չեղեւ հետամուտ բդեշխութեան, սակայն երկիցս բդեշխ եկաց. զառաջինն վաղ ուրեմն քան զժամանակն[4]. եւ երկրորդ անգամ յիւրում իսկ ժամանակի վասն իւր, այլ վասն ընկերհաշտութեանն անագան ուրեմն։ Որ զերկոսին քաղաքսն[5] զանհնարին թշնամիս պետութեանս այսորիկ ի հիմանց բրեալ, ոչ զմօտաւոր մարտս պատերազմաց միայն, այլ եւ զհանդերձեալսն եւս բարձ ի միջոյ։ Զի՞նչ զմեղմական բարուցն ասիցեմ, զի՞նչ զջերմեռանդն սիրոյ զոր առ մայրն ունէր, եւ կամ զի՞նչ ինչ զմարդասէր խնամոցն զոր առ քորսն ցուցանէր, կամ զընդելական բարեկամութենէն՝ որով ընդ իւրսն վարէր, եւ կամ զարդարութենէն առ ամենայն ոք։ Այս ամենայն յայտնի եւ ծանօթ առ ձեզ են։ Այլ թէ որչափ ինչ սիրելի եւ ցանկալի քաղաքին էր, յայտ ի տրտմութենէն եղեւ՝ որ պատեալ էր զամենեքումբք ի ժամանակի յուղարկաւորութեան նորա։ Իսկ արդ զի՞նչ ինչ շահս կարէր նմին գործել տակաւ ամացն յաւելուած։ Հասակ հինօրեայ ծերութեան թէպէտ եւ ծանրատաղտուկ եւ դժնդակ չիցէ, որպէս յիշեմ իսկ՝ թէ Կատոն միով ամաւ յառաջ քան զմեռանելն՝ ընդ իս եւ ընդ Սկիպիոնեայ խօսեցաւ, բայց սակայն բառնայ զայն դալարութիւն եւ զվայելչութիւն՝ յորում յայնժամ դեռ եւս կայր Սկիպիոն։

Վասն որոյ այնպիսի ինչ ի կեանս նորա բախտն եւ փառք եղեն, զի չէ մարթ յաւելուլ ինչ ի նոսա. այլ երագութիւնն չետ թոյլ զգալ մահուն։ Այս ազգ մահու դժուարին առ ասել է. տեսանես ապաքէն եթէ զինչ կարծեցին մարդիկն։ Բայց սակայն զայս ինչ ի դէպ եւ պատշաճ է ասել ճշմարտութեամբ, եթէ Պ. Սկիպիոնեայ՝ ի բազում աւուրց կենաց իւրոց՝ որ նմա մեծապայծառ փառաց եւ ցնծալից ուրախութեան պատճառք եղեն, այն օր առաւել պայծառագոյն լեալ իցէ, յորում յետ ծերակուտին արձակելոյ ածաւ ի տուն ընդ երեկս, ի խորհրդականացն եւ ի ժողովրդենէն Հռոմայ եւ ի նիզակակցացն եւ ի Լատինացւոց միով աւուրբ յառաջ քան զմեռանելն[6]. զի թուի ինձ եթէ յաստիճանէ անտի այն-

ալխսի մեծապատիւ փառաւորութեանն առ դիս մնաւանդ եւ ոչ ի սանդարամետս գնացեալ իցէ: Քանզի չեմ ինչ հաճեալ եւ հաւանեալ նոցա, որ ի սակաւ ժամանակաց հետէ առին ասել թէ ընդ մարմնոյ եւ ոգիքն կորընչին, եւ ամենայն ինչ մահուամբն բառնին ի միջոյ:



Արդ մեծարոյ համարիմ ես զհնոցն ծերութիւն եւ կամ զմերոց նախնեաց, որ զմեռեալսն այնչափ նուիրական պաշտամամբք յուղարկաւորութեան պատուեն. զոր չառնէին իսկ, եթէ համարէին թէ չունիցին ինչ ընդ նոսա հաղորդութիւն իրքն. կամ զնոցայն որ ի սմին աշխարհի բնակեցին, եւ զմեծ Յունաց աշխարհ որ այժմ անկաւ ի փառացն, յորժամ յիւրում փառաւորութեանն էր, ազգի ազգի խրատուք եւ հրահանգօք պատուիրանացն տեղեակ եւ հմուտ գործէին? եւ կամ զայնր՝ որ պատգամօք Ապողոնեայ դից՝ քան զամենայն մարդիկ իմաստուն համարեցաւ, որ ոչ եթէ հանգոյն բազմաց ի մարդկանէ մերթ զայս ինչ եւ մերթ զայն ասէր, այլ ցանգ իսկ եւ հանապազ զնոյն բան երկրորդէր՝ թէ ոգիք մարդկան աստուածեղէնք իցեն, եւ յորժամ ի մարմնոցն մեկնեալ բաժանիցին, յերկինս դառնայցեն, որ լաւացն եւ արդարոց կարի իսկ յոյժ դիւրագոյն դիպիցի:

Այս եւ Սկիպիոնեայ եւս այսպէս թուէր, որ սակաւ աւուրբք յառաջ քան զմեռանելն, յորժամ Փիղոս եւ Մանիղիոս եւ այլ եւս բազումք մօտ էին, մինչ եւ դու եւս, Սկեւողա, ընդ իս անդր եկիր, որպէս թէ յառաջագոյն իմացեալ էր, զերիս աւուրս զընկերհաշտութենէ ճառ արկեալ խօսեցաւ, որոյ հուսկ յետին բանքն գրեթէ զոգւոցն անմահութենէ էին, զորոց ասէր եթէ յանուրջս յԱփրիկանեայ լուայ: Եթէ այս այսպէս իցէ, զի լաւացն ոգիք դիւրագոյնս թռանիցին ի մահուանն, իբրեւ ի բանտէ եւ ի կապանաց մարմնոյ, զո՞ ոք մարթ իցէ մեզ համարել՝ որ քան զՍկիպիոն դիւրագոյն առ դիս գնացեալ իցէ: Վասն որոյ կասկածեմ ընդ այնպիսի ինչ՝ որ նմին դէպ եղեւ, տրտմել եւ տխրել, զի մի առաւել նախանձոտի՝ քան բարեկամի գործ լինիցի: Իսկ

եթէ ճշմարիտ եւս իցէ եթէ նոյն եւ միօրինակ կորըստեամբ ոգիքն եւ մարմինք կորնչիցին, եւ ապրուստն ինչ այնուհետեւ չմնայցէ, յայտ իսկ է թէ որպէս բարի ինչ ի մահուան չգտանի, նոյնպէս եւ ոչ չար ինչ ի նմին գտանիցի։ Վասնզի յորժամ ապրուստն կորնչիցի, ընդ այն համար է որպէս թէ եւ ծնեալ իսկ չիցէ․ բայց սակայն ցնծամք մեք թէ ծնաւ նա, եւ քաղաքս եւս այս, որչափ եւ կայցէ մնայցէ՝ ընդ այն զուարթացեալ զուարճանայցէ։ Նոյն սակս, որպէս կանխագոյն ասացի, բարիոք իսկ այն նմին եղեւ, այլ ինձ կարի ծանր եւ դժնդակագոյն․ քանզի արժան իսկ էր, զի որպէս ես յառաջագոյն ի կենաց մտի, նոյնպէս եւ յառաջագոյն ելանիցեմ։ Բայց սակայն յիշատակաւ մերոյ բարեկամութեանս այնպէս իմն ուրախ լինիմ, մինչեւ թուի ինձ եթէ երանելի կենաց կեցեալ իցեմ, զի ընդ Սկիպիոնեայ կեցի․ ընդ նմին զհասարակաց եւ զտանն իրս վճարեցի, ընդ նմա ի խաղաղութեանն էի, եւ ընդ նմին ի պատերազմի․ նա եւ այն եւս՝ յորում ողջոյն իսկ բարեկամութեանն զօրութիւն հաստատեալ կայ, կամաց եւ յօժարութեան եւ խորհրդոց կատարեալ միաբանութիւն ընդ միմեանս ունէաք։ Այլ վասն ոչ այնչափ համբաւն այն իմոյ իմաստութեանն, մանաւանդ թէ սուտ համբաւն, զոր արդ եւս Փաննիոս յիշեաց, ուրախ զիս առնիցէ, որչափ այն, զի ակն ունիմ յուսալից եթէ յիշատակ մերոյ բարեկամութեանն մշտնջենակաց լինիցի։ Եւ այն եւս ինձ կարի հեշտական է, զի ի համօրէն դարս երեք կամ չորք բարեկամութիւնք սմին նմանագոյնք հազիւ թէ գտանիցին․ եւ թուի ինձ եթէ Սկիպիոնեայ եւ Լելեայ բարեկամութիւնն ի նոցին սակի յետնոցն ծանօթ լինիցի։

ՓԱՆՆԻՈՍ․ Արդարեւ, Լելի, հարկ է թէ այդ այդպէս իցէ․ այլ քանզի զբարեկամութենէ յուշ արարեր, եւ դատարկ իսկ եմք, գործ մի կարի հաճոյական ինձ առնիցես, թուի ինձ թէ եւ Սկեւոլայ եւս, եթէ, որպէս սովոր իսկ ես զայլոց իրաց, յորժամ ի քէն խնդրիցեն՝ խօսել, նոյնպէս եւ զբարեկամութենէ խօսիցիս, եւ յայտ արարեալ ցուցանիցես եթէ զինչ զայնմանէ կարծիցես, եւ որպիսի ինչ զայն հաշուիցիս, եւ զինչ պատուէրս վասն նորին տայցես։

ՍԿԵՒՈՂԱ. Նոյն ինձ եւս կարի հաճոյ լինիցի. եւ յորժամ ընդ քեզ զայնմանէ կամէի խօսել, փաննիոս կանխեաց քան զիս. վասն որոյ երկոցունցս եւս հաճոյական ինչ առնիցես։



## Ե

ԼԵԼԻ. Բազում յօժարութեամբ եւ ախորժիւք զայնմանէ խօսէի, եթէ բաւական այնմ զանձն համարէի. մանաւանդ զի եւ իրքն՝ որ առաջի կան, կարի զարմանալիք են, եւ եմք իսկ, որպէս փաննիոս ասաց, դատարկ եւ անգործ։ Այլ ո՞ իցեմ ես, կամ զի՞նչ իցէ կար զօրութեան իմոյ։ Իմաստնոց եւ գիտնոց միայն սովորութիւն է, եւ մանաւանդ իմաստնոցն Յունաց, զի առաջի դնիցի նոցա ինչ՝ զորմէ ճառ արկեալ խօսիցին, թէպէտ ափ յափոյ վաղվաղակի։ Այս գործ մեծ է, եւ կարօտ բազում հրահանգօք։ Վասն որոյ ինձ այսպէս թուի եթէ զօր զբարեկամութենէ ճառել մարթ իցէ, ի նոցանէ՝ որ զայնպիսին գիտել խոստանայցեն, պարտ եւ պատշաճ է ձեզ խնդրել։ Այլ ես թելադիր եւեթ լինել ձեզ կարող եմ, զի զբարեկամութիւնն նախամեծար քան զամենայն իրս մարդկօրէնս համարիցիք։ Քանզի չիք ինչ այնպէս պիտանացու՝ բնութեանն, եւ այնչափ պատշաճագոյն ամենայն իրաց, թէպէտ աջող իցեն թէպէտ ձախող։

Սակայն թուի ինձ նախ՝ թէ չէ մարթ բարեկամութեանն լինել՝ բայց ի լաւսն եւեթ։ Ոչ ճշգրիտ ինչ զայնմանէ ասիցեմ, հանգոյն նոցա՝ որ բազում նուրբ բանիւք զայսմանէն ճառիցեն. թերեւս ճշմարիտ նոցա բանքն իցեն, սակայն դոյզն ինչ եւ փոքր առ ի շահ օգտութեան հասարակաց։ Քանզի չառնուն յանձն եթէ մարթ իցէ ումեք առանց իմաստութեան վարս լաւութեան ունել [8]։ Նոյն ես իսկ կամիմ զի այդ ճշմարիտ իցէ։ Այլ զայնմ իմաստութենէ յայտ առնեն, որում չեւ եւս տակաւին եհաս ոք ի մարդկանէ։ Իսկ մեզ յայտ՝ որ ի պիտանութեան եւ ի հասարակաց կենաց մարդկան իցեն, եւ ոչ ի նոսին որ հնարեալքն եւ կամ անէնչականք իցեն, պարտ եւ պատշաճ է ուշ եդեալ հայել։ Զասեմ ինչ թէ Կ. Փաբրիկոս եւ Մ. Կուրիոս եւ Տի. Կորունկան՝ զորս

նախնիքն մեր իմաստունս հաշուէին, ըստ նոցա մտացն իմաստունք էին։ Վասն որոյ իւրեանց անձանց պահեցին զնախանձելի եւ զմեծին անուն իմաստութեանն. զայն միայն առնուցուն յանձն մեզ շնորհել, թէ մեր նախնիքն արք լաւք լեալ էին։ Սակայն չառնուն եւ զայն յանձն. քանզի իմաստնոյ միայն, ասեն, մարթ է զայն շնորհել։

Եւ արդ թանձրագոյնս բարբառեսցուք, որպէս ասենն։

Որ այնպէսն վարեցին եւ այնպիսի կեանս կեցցեն, զի իւրեանց հաւատարմութիւնն եւ անարատութիւն եւ արդարութիւն եւ առատամիտ բարքն երեւէին, եւ ազատ ամենեւին ի ցանկութեանց եւ ի ժպրհութենէ էին, եւ ունէին բազում հաստատութիւն պնդութեան, որպիսիք ոքք նոքա զորս յիշեցաքն՝ էին, զորոն զայնոսիկ՝ լաւս, որպէս եւ եղենն իսկ, նոյնպէս եւ արժանիս անուանելոյ համարեսցուք։ Քանզի ի կիրթ անկեալ երթան ըստ մարդկան կարի զհետ բնութեանն, որ առաջնորդ ազնուագոյն բարուց կեանս վարելոյ է։ Եւ ինձ այսպէս թուի, եթէ յայն սակս ծնեալ իցեմք, զի յամենեցունց միջի հաղորդութիւն ինչ ընկերութեան լինիցի, որ այնչափ յաճախագոյն լինիցի, որչափ աւելագոյն մերձաւորութիւնն իցէ։ Նմին իրի իսկ քաղաքացիքն քան զպանդուխտս, եւ ընտանիքն քան զօտարոտիսն աւելագոյն հաղորդք միմեանց գտանին։ Քանզի զբարեկամութիւնն՝ զոր ընդ սոսա ունիմք, բնութիւնն ինքնին ծնանի. այլ այն չունի ինչ կայ եւ հաստատութիւն. քանզի այնու իմն բարեկամութիւնն քան զազգականութիւն առաւել գտանի, զի յազգականութեանն մարթ է զգութն ի բաց թողուլ, այլ ի բարեկամութեանն չէ մարթ, չէ հնար։ Զի եթէ գութն եւ խնամք ի բաց ի միջոյ բարձցին, բարեկամութեանն անուն ջնջեալ կորնչի, այլ ազգականութեանն կայ միայ տակաւին։ Աստրատին մարթ է ի միտ առեալ ճանաչել թէ քանի՞ն ինչ զօրութիւն բարեկամութիւնն ունիցի, զի ի բազում միաբանութեանցն մարդկան՝ զորս ինքնին բնութիւնն կարգեաց եդ, այնպէս իմն ամփոփեցան իրքն եւ անձկագոյն եղեն, զի ամենայն սէր եւ գութ կամ յերկուց եւ կամ ի սակաւաւորաց միջի խառնեալ։



Իսկ բարեկամութիւնն ոչ այլ ինչ է, բայց ամենայն աստուածեղէն եւ մարդկեղէն իրաց մեծաւ իմն խնամով եւ սեռն սիրով միաբանութիւն։ Չգիտեմ եթէ իցէ ինչ անմահ դիցն մարդկան պարգեւեալ քան զսոյն ա-նուագոյն բաց յիմաստութենէ։ Ոմանք զընչաւէտու-թիւն նախամեծար համարին, կէսք զառողջութիւն մե-ծարոյ հաշուին, այլք զիշխանութեանն մեծութիւն ա-ռաւել համարին, ոմանք զմեծապատիւ փառաւորու-թիւնս, եւ բազումք եւս զփափկութիւն եւ զցանկութիւն քան զամենայն ինչ լաւագոյն դնեն։ Այլ այս յետինս անասնոց միայն է. իսկ առաջինքն եղծականք եւ անհաս-տատականք, եւ ոչ եթէ ի մեր ինչ խորհուրդս հաստա-տեալք, այլ ի բախտին փոփոխութիւն ապաստան։ Իսկ որ յառաքինութեանն զկատարեալ բարութիւնսն դնի-ցեն, նոքա կարի իսկ անուանիք եւ պայծառագոյնք են. սակայն սոյն այս առաքինութիւն է, որ զբարեկամու-թիւնն ծնանիցի եւ հաստատուն ունիցի. եւ չէ իսկ մարթ բարեկամութեանն առանց առաքինութեան լինել։

Ապաքէն զառաքինութիւնն ի կարգէ անտի կենաց եւ բանից մերոց յայտ արարեալ ցուցանեմք, եւ ոչ զայն ի մեծութենէ ինչ բանիցն չափեմք, որպէս ոմանք յիմաս-տնոցն առնեն։ Աղէ զարսն զայնոսիկ, որ արդեամբք իսկ լաւք հաշուիցին, այնպիսիս համարեսցուք. զՊաւղոս ասեմ, եւ զԿատոն, զԳաղղոս եւ զՍկիպիոն եւ զՓիղոս։ Զսոցա չափ ինչ կեանսն ամենեքին շատ համարին. թող-ցուք զայնս որ բնաւ եւ գտանիցին իսկ ոչ ուրեք։ Արդ յայսպիսի արանց միջի այնպիսի իմն մեծաշահ օգտու-թիւնս ունի բարեկամութիւնն, զոր չէ դիւրին յայտ առնել։

Նախ՝ Ո՞ ԹԷ ԿԱՐԻՑԷ ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԿԵԱՆՍ ՈՒՆԵԼ, որպէս Էննիոս ասաց, ՈՐ ՈՉ Ի ԽՆԱՄՍ ԲԱՐԵԿԱՄԻՆ ՀԱՃԵԱԼ ՀԱՆԳՉԻՑԻ։ Զի՞նչ քաղցրագոյն քան զայն կայցէ, յորժամ այնպիսի ոք ընկեր ունիցիս, ընդ որում այնպէս զամենայն ինչ խօ-սել համարձակիցիս, որպէս ընդ քո իսկ անձն։ Զի՞նչ ինչ վայելչութիւն ի յաջողութեան գտանիցի, եթէ չունիցիս զոք՝ որ իբրեւ զքեզն ընդ այն զուարճացեալ բերկրեսցի։

Իսկ ձախողանաց տանել կարի դժուարին եւ ծանրատաղտուկ լինէր, եթէ չէր ոք՝ որ աւելագոյն քան զքեզ ընդ այն տրտմէր եւ տխրէր։ Այլ զի ի կարճոյ հատից, այլ ամենայն իրք որ խնդրիցին, իւրաքանչիւր պատշաճ առ առանձինն ինչ իրս են. արարք՝ զի նոքօք վարիցիս, եւ աւագութիւն՝ զի այլոց ամուր ապաստանի լինիցիս. պատիւ՝ զի մեծարեալ պատուեսցիս. իրք զուարթարարք, զի նոքօք ուրախ լինիցիս. առողջութիւն՝ զի անցաւ եւ առանց վշտաց լինիցիս, եւ զմարմնոյ պաշտամունսն վճարիցես։ Այլ բարեկամութիւնն բազում ինչ բովանդակեալ ունի. յոր կողմն եւ դառնայցես, անդէն կազմ եւ պատրաստական է. ոչ ի վայրաց ուրեք մերժի, ոչ անժամ ինչ է եւ ոչ տաղտկալի։ Վասն որոյ, որպէս ասենն, ոչ այնչափ ջրով եւ հրով պաշտիմք, որչափ բարեկամութեամբն։ Այլ ոչ եթէ զլոկ եւ զչափ ինչ բարեկամութենէն ասիցեմ, թէպէտ եւ այն եւս ուրախ առնիցէ եւ բազում մեծաշահ օգտութիւնս ունիցի, այլ զճշմարիտ եւ զկատարեալ բարեկամութենէ ասեմ, որպիսի ինչ նոցայն էր, որ գուն ուրեք եւ անօսր յիշատակին։ Զանզի եւ զաջողութիւնսն լուսաւորագոյն եւ պայծառագոյն առնէ բարեկամութիւն, եւ զչաջողութիւնսն՝ բաժանեալ եւ բաշխեալ՝ թեթեւս եւ դիւրինս գործէ։



## Է

Թէպէտ եւ բազում եւ մեծամեծ օգտութիւնս բովանդակեալ ունի բարեկամութիւն, այլ այն իմն գեր ի վերոյ քան զամենայն է, զի բարւոք յոյս ակնկալութեան մատուցանէ վասն առ յապա ժամանակաց. եւ չախորժէ բնաւ, զի ոգիքն ծնգիցին եւ ի վհատութիւն կործանեսցին։ Այլ դարձեալ եթէ ի բարեկամն ոք նայիցի, իբրեւ յիւր ինչ պատկեր նայիցի։ Վասն այնորիկ եթէ հեռաւորք իցեն՝ մօտ իսկ են, եւ եթէ կարօտեալք՝ լցեալ առատացեալ, եթէ տկարք իցեն, հզօրք են զօրութեամբ. եւ որ դժուարին առ ասել է, եթէ եւ մեռեալ եւս իցեն, կեան եւ զկենդանութիւն կրեն. այնչափ պատիւ եւ յիշատակ եւ անձուկ բարեկամացն զհետ գնայ նոցա։ Որով նոցա մահն երանելի թուի եւ սոցա կեանքն գովելի։ Այլ

եթէ զկապ գթոյ եւ զխնամոց ի բնութենէ իրացն ի բաց բառնայցես, ոչ տուն ինչ եւ ոչ քաղաք կարէ կալ յիւրում կայի, եւ չմնայ ագարակաց մշակութիւն։ Նաեւ եթէ չիցէ մարթ առնուլ քաջ ի միտ, թէ որչափ ինչ զօրութիւն իցէ բարեկամութեանն եւ միաբանութեան, ի խռովութեանցն եւ ի չմիաբանութեանց մարթ եւ պատշաճ է ի միտ առնուլ ճանաչել։ Քանզի ո՞ր տուն հաստատուն, կամ ո՞ր քաղաք այնպէս ամրաշէն իցէ, զոր ատելութիւնն եւ պառակտութիւն չիցեն կարող ի հիմանց բրել։ Յորմէ մարթ է ի վերայ հասանել եթէ քանիօն բարութիւնք ի բարեկամութեանն գտանիցին։ Պատմի իմն եթէ ոմն ուրեմն յԱգրիգենդացւոց քաղաքէ[9], այր հմուտ, յունական նուագօք ըղձութիւնս առնէր, թէ որ ինչ ի բնութիւնս իրացն եւ ի համօրէն աշխարհի հաստատուն կայցէ եւ որ ինչ շարժիցին, զնոսին բարեկամութիւնն ընդ միմեանս խառնեալ զօդէ, եւ չմիաբանութիւն քակտէ եւ բաժանէ յիրերաց։ Այն ամենայն համօրէն մարդիկ խելամուտ լինին, եւ արդեամբք իսկ ցուցանեն զհաւաստին։ Նաեւ արդ ո՞ այն ոք իցէ՝ որ ոչ մեծագրուատեօք գովիցէ զգործ բարեկամին, յորժամ նա ճգունս վասն իւրոյ բարեկամին յանձն առնուցու, կամ կցորդ վշտացն եւ վտանգաց լինիցի։ Որպիսի՞ գոչիւն եւ աղաղակ չեղեւ լսելի փոքր մի յառաջ յողջոյն իսկ թատերն, ի տեսլեան անդ խաղուն՝ զոր բարեկամին իմ եւ ասպնջական Մ. Պակուբի արար. յորժամ անգիտակ էր թագաւորն եթէ ո՞ ոք յերկոցունցն Որեստ[10] իցէ։ Պիղադէս ասէր զանձնէ թէ ինքն Որեստն իցէ, զի փոխանակ նորա մեռցի. իսկ Որեստ, որպէս եւ էրն իսկ, պնդէր թէ ինքն իցէ։ Նաեւ հանդիսատեսքն կոփիւնս եւ գոփիւնս հանէին ընդ իրսն կերպարանեալս. զինչ ինչ յայնժամ չառնիցեն, յորժամ արդեամբք իսկ իւրքն գործիցեն։ Ընդէր ի նմին վայրի յայտ առնէր բնութիւնն զիւր զօրութիւն. քանզի մարդիկ զայնմանէ՝ զոր ինքեանք չկարէին վճարել, վճիռ իմն բերէին թէ որ արարն զայն՝ բարւոք գործեաց։ Թուի ինձ եթէ զոր զբարեկամութենէն կարծէի՝ տացի մինչեւ ցայս վայր։ Եթէ իցէ եւ այլ եւս ինչ, (քանզի եւ է իսկ, որպէս ինձն թուի, բազում ինչ) ի նոցանէ՝ որ զայնմանէն ճառիցեն, խնդրեցէք թէ կամիք։

ՓԱՆՆԻՈՍ. Այլ մեք առաւել ի քէն խնդրեմք, թէպէտ եւ բազում անգամ եւ ի նոցանէ եւս խնդրեցաք եւ լուաք կամօք եւ ախորժիւք. բայց այլ իմն են կարգ բանից քոց, զոր ցանկամք լսել մի ըստ միոջէ։

ՍԿԵՒՈՂԱ. Յայնժամ մանաւանդ զայն ասէիր, Փաննիէ, եթէ փոքր մի յառաջ ի պարտիզի անդ Սկիպիոնեայ՝ յորժամ զընկերհաշտութենէ բանք ճառէին, մօտ լեալ էիր։ Որպիսի՛ պաշտպան արդարութեանն եղեւ յայնժամ ընդդէմ նուրբ եւ պաճուճազարդ ճառիցն Փիղոսի։

ՓԱՆՆԻՈՍ. Կարի դիւրագոյն այն աջողէր, առն արդարոյ՝ արդարութեանն պաշտպանել։

ՍԿԵՒՈՂԱ. Զի՞նչ բարեկամութեանն պաշտպանել իցէ. ո՛չ ապաքէն գործ մի դիւրին է այնմ՝ որ վասն մեծաւ հաւատարմութեամբ եւ բազում հաստատութեամբ եւ արդարութեամբ զայն պահելոյ, մեծապատիւ մեծարեցաւ։



Ը.

ԼԵԼԻ. Ո՞չ ապաքէն բռնադատութիւն իցէ այս. քանզի զի՞նչ փոյթ իցէ ինձ եթէ այսպէս եւ կամ այլագունակս ինչ բռնադատիցէք։ Արդարեւ բուռն լինիք ինձ. քանզի կարի դժուարին է եւ ոչ արդար ինչ՝ յօժարութեան փեսայիցն մանաւանդ յիրս ազնուագոյնս դիմադարձ լինել։ Եւ արդ բազում անգամ յորժամ զբարեկամութենէ ածիցեմ զմտաւ, այն իմն առաւել արժանի խորհելոյ ինձ թուի, եթէ վասն տկարութեան ինչ արգելք եւ կարօտութեան՝ ցանկացեալ իցէ մարդկան ընդ բարեկամութիւնն. զի բարերարք եւ երախտաւորք միմեանց լեալ, զոր ինքն չունիցի, զայն յայլմէ առնուցու, եւ ինքն եւս գարձեալ զայնր փոխարէնս հատուցանիցէ։

Ա՞յս ինչ սեպհական բարեկամութեան իցէ։ Այլ ա՛յլ ինչ պատճառք պատուականագոյնք եւ գեղեցկագոյնք ի միջի կան, որ առաւել ընտարոյսք եւ բարոյածինք են։ Քանզի սէր յորմէ բարեկամութիւնն [11] առնու զանուանումն, սկիզբն է ի մի միաբանութիւն զմնամն խառնելոյ։ Զի բազում անգամ եւ ի նոցանէ եւս՝ որ կերպարանօք

բարեկամութեանն մեծարեալ պատուիցին, եւ վասն պատշաճութեան ժամանակին պաշտօն առնուցուն, բազում շահս եւ օգուտս մարթ է գտանել։ Այլ ի բարեկամութեանն չիք ինչ կեղծեօք կամ կերպարանեալ. եւ որ ինչ է ի նմին, ճշմարիտ է եւ ի յօժարութենէ կամացն գործեալ։ Այր վասն թուի ինձ եթէ բնութիւնն եւ ոչ կարօտութիւն ծնեալ իցէ զբարեկամութիւն, եւ յօժարութիւն սիրոյ եւ խնամոց, քան խորհուրդք եւ յիշատակ շահից իրացն եւ օգտութեան։ Զսորին հանգամանս մարթ իսկ է եւ յանասնոց ի միտ առնուլ, որք զեւրեանց ծնունդսն, եւ ծնունդքն եւս զեւրեանց ծնանելիսն այնպիսի ինչ սիրով սիրեն առ ժամանակ մի, որպէս զի դիւրաւ մարթիցի ոք խելամուտ լինել թէ որչափ ինչ գութ ընդ միմեանս ունիցին։ Այլ ի մարդիկ եւս իմն աւելի յայտնագոյն երեւիցի։ Նախ ի սիրոյն որ ի ծննդոցն եւ ի ծնանելեացն միջի կայցէ, զոր անհնարին ինչ եղեւն եւեթ մարթի եղծանել։ Երկրորդ անգամ անտի իսկ, զի եթէ զայնպիսի ինչ ոք գտանիցեմք, որում բնութեամբն եւ բարուք միաբան եւ հաւանք եւ հաւասարք գտանիցիմք, անդէն վաղվաղակի միտեալ յօժարիցիմք զնա սիրել, քանզի համարիմք այնպէս թէ ճաճանչ իմն լաւութեան եւ առաքինութեան ի նմին նշմարեալ տեսանիցեմք։

Չիք ինչ քան զառաքինութիւն ցանկալի, եւ ոչ՝ որ այնպէս յօժարագոյն ի սիրել կազմիցէ։ Քանզի զնոսա եւս՝ զորս եւ տեսանեմք իսկ ոչ, վասն առաքինութեան եւ լաւութեան՝ օրինակաւ իմն սիրեմք։ Ո՞ այն ոք իցէ՝ որ զԳայիոս Փաբրիկիոս եւ զՄ. Կուրիոս, զոր եւ տեսեալ իսկ չէցէ, բազում սիրով եւ խնամով չյիշիցէ։ Իսկ ո՞ ոք զՏարկուինոս Ամբարտաւան [12] եւ զՍպուրիոս Կասսիոս եւ զՍպուրիոս Մեղիոս չխոտիցէ։ Ընդ երկոսին զօրավարսն ընդ Պիւռեայ եւ ընդ Աննիբաղայ, մեծամեծ մարտք պատերազմաց վասն պետութեան մղեցան յիտաղացւոց աշխարհին։ Զպիւռեայ վասն նորա ազնուական բարուցն՝ ոչ օտարոտի ինչ միտս ունիմք. իսկ զԱննիբաղ վասն իւրոյ անագորոյն եւ գազանաբիտ բարոյիցն՝ քաղաքս այս ցանդ դարովեալ խոտեսցէ։

Թ

Արդ եթէ այսպիսի ինչ լաւութեանն զօրութիւն իցէ, զի ի նոսին եւս՝ զորս եւ տեսանեմք իսկ ոչ, եւ որ եւս ինձ մեծագոյն է, ի մեր իսկ թշնամիսն սիրիցեմք, զի՞նչ զարմանք իցեն, թէ ոգիք մարդկան յուզիցին, յորժամ զնոցա՝ ընդ որս կենաց կցորդ կարիցեն լինել, զքաջութիւն եւ զլաւութիւն տեսանիցեն։ Թէպէտ եւ հաստատագոյն լինի սէր յընդունելոյ անտի երախտիս բարեաց, եւ ի տեսանելոյ զխնամս կամացն, եւ ի կցորդութենէ կենաց. զի այս ամենայն յորժամ յառաջին շարժումն անդր մտացն եւ սիրոյն յաւելցի, սքանչելի ինձ յորդեալ բորբոքեսցի գթոյն յաճախութիւն։ Իսկ եթէ ի տկարութենէ ինձ եղեալ բարեկամութիւնն կարծիցի ոմանց, որպէս զի իցէ ինչ ի միջի, որով իւրաքանչիւր ոք այնմ՝ որում ցանկայն, հասանիցէ, արդարեւ ի բազում անարգութիւն եւ ի չազնուականութիւն իջանիցի բարեկամութեան սկիզբնն։ Զի կամին ինձ թէ ի չքաւորութենէն եւ ի կարօտութենէ ծնանիցի։ Եթէ այն այնպէս էր, ապա որչափ տկարագոյն եւ չքաւոր ոք զանձն համարէր, զոյնչափ պատշաճագոյն ի բարեկամութիւն գտանէր. որ չէ քանզի եւ չէ իսկ այնպէս։ Զի որչափ վստահ յիւր անձն ոք իցէ եւ ազգի ազգի առաքինութեամբք եւ իմաստութեամբք այնպէս պարսպեալ եւ ամրացեալ, որպէս զի չիցէ ինչ ումեք կարօտ, եւ զամենայն ինչ՝ որոց պէտս ունիցի, յիւրում անձին բովանդակեալ գտանիցէ, եթէ խնդրիցէ այնպիսին բարեկամութիւն առնել եւ ի նմին ցանգորդել, եւս ինձ աւելի բարձրագոյն եւ յառաջադէմ ի նմին լինիցի։ Կարօ՞տ ինչ ինեւ էր Ափրիկանոս. եւ ոչ երբեք. այլ եւ ոչ ես նորա կարօտ ինչ էի։ Սակայն զարմացեալ ընդ նորա գեղեցիկ առաքինութիւնս, եւ նա եւս, թերեւս կարծեօք ինչ՝ զոր զբարուցն իմոց ունէր, սիրեաց զիս։ Յաճախեաց զխնամսն ստէպ կցորդութիւն կենաց։ Եւ թէպէտ բազում եւ մեծամեծ օգտութիւնք զայնր զհետ եկին, այլ ոչ եթէ նոցին ակնկալութիւն պատճառք սիրոյն եղեն։ Քանզի որպէս երախտիս այլոց առնեմք եւ առատամիտ լինիմք՝ ոչ զի շնորհս ինչ պահանջիցեմք, (զի ոչ եթէ ի վարձու տամք զբարերարութիւնն)

այլ զի անդստին ի բնածին բարուց մերոց մէտք եւ յօժարք յառատամտութիւն եմք. դոյնպէս եւ զբարեկամութիւնն ոչ վասն վարձուց ինչ ակնկալութեան, այլ զի համօրէն հեշտականութիւն նորին եւ շահ ի նմին իսկ ի սէրն բովանդակեալ կայ, պատշաճ համարիմք խնդրել: Սակայն նոքա՝ որ իբրեւ զանասունս անխօսունս զամենայն ինչ ի ցանկութիւն անդր ձգեալ տանիցին, կարի իսկ օտարոտի կարծիս զամենէ կարծեն: Եւ չեն ինչ զարմանք: Զի որ զերեւանց միտս եւ զխորհուրդս զամենայն յայսպիսի խոտան եւ յանարգագոյն իրս հաստատեալ եդեալ իցեն, չէ մարթ նոցա առնուլ ինչ յանձն ի բարձրականացն եւ ի փառաւորայն եւ յաստուածեղինաց: Նմին իրի իսկ թողցուք ի բաց զայնպիսիսն ի բանից աստի մերոց, եւ հաւանեալ առցուք յանձն՝ եթէ զազդումն սիրոյ եւ զգութ խնամոց բնութիւնն ինքնին գլխովին ծնանիցի, յորժամ նշանակ լաւութեան ընծայանայցէ. եւ որ այնմ ցանկանայցեն, մօտ երթեալ զնովիմբ գիրկս արկանիցեն, զի ի պիտանութեան այնր՝ զոր սկսանն սիրել, եւ ի բարւոյն վայելեսցեն, եւ նմանագոյնք ի սէրն եւ հաւասարք լինիցին, եւ առաւել յօժարագոյնք ի բարերարել քան ի պահանջել: Եւ սոյն ազնուական մրցութիւն լինիցի ի նոցա միջի: Այսպէս բազում շահք մեծաշահք ի բարեկամութենէն կթիցին, եւ սկիզբն նորա ի բնութենէ եւ ոչ եթէ ի տկարութենէ լինիցի, եւ առաւել հաստատագոյն եւ ճշմարտագոյն: Զի եթէ շահից ակնկալութիւն զբարեկամութիւնսն խառնէր, ի նոցա փոփոխել՝ լուծեալ քայքայէր: Այլ քանզի չէ մարթ բնութեանն փոփոխել, յայն սակս եւ բարեկամութիւնք ճշմարիտք՝ տեւականք եւ մշտնջենականք են: Աւասիկ յայտ արարեալ ցուցաւ ձեզ սկիզբն եւ ծագումն բարեկամութեանն, եթէ ոչ ընդդէմ սոցին ինչ բանս առնել կամիցիք:

**ՓԱՆՆԻՈՍ.** Այլ դու յառաջ զբանդ մատո. քանզի ես փոխանակ ընդ սոցա որ կրտսերս է, ըստ իրաւանց իմոյ երիցութեան առնեմ պատասխանի:

**ՍԿԵՒՈՂԱ.** Եւ կարի իսկ քաջ. վասն որոյ լուիցուք:



## Ժ.

ԴԵՂԻ. Որդ. լուսալուք, արք պատուականք, զբարեկամութեան ճառումն՝ զոր ես եւ Ակիպիոն բազում անգամ ի միջի մերում ճառէաք։ Թէպէտ եւ ասէր նա թէ կարի դժուարին իցէ տեւել բաւել ի բարեկամութեան մինչեւ ցկատարած կենաց։ Զի կամ վասն զի ոչ նոյն ինչ երկոցուն եւս օգուտ է, բազում անգամ քակի բարեկամութիւնն, եւ կամ զի զընկերհաշտութենէ ոչ զնոյն կարծիս ունին՝ բազում անգամ լուծեալ եղծանի։ Վասն որոյ եւ ասէր իսկ եթէ բարք մարդկան հանապազ փոփոխին, մերթ ի ձախողանաց, եւ մերթ ի հասակացն զարգանալոյ։ Եւ զառակ օրինակի սոցին ի մանկութեան տիոցն առնոյր. զի եւ կարի իսկ կարեւոր սէր մանկանցն բազում անգամ նուազէ, յորժամ ի չափ հասեալ՝ զառնացի պատմուճանն զգենուցուն։ Իսկ եթէ պահիցեն եւս մինչեւ ի տիս երիտասարդութեանն, այլ յայնժամ կամ ամուսնութեանն կռուովք, եւ կամ վասն օգտութեան ինչ իրիք, որում երկոքին միանգամայն չկարիցեն հասանել, լուծանի եւ քակի։ Թէպէտ եւ իցեն ոմանք՝ որ կարի յառաջադէմ ի բարեկամութեան իցեն, սակայն բազում անգամ եւ այն եւս եղծեալ ապականիցի՝ եթէ ի պատուոյ կռիւս անկեալ կործանեսցին։ Ոչ քան զամենայն ցաւ ժանտագործ եւ ապականիչ ի բարեկամութիւնս՝ ընչիցն ցանկութիւն է, զոր բազումք ունին. իսկ յաւագաց միջի վասն պատուոյ եւ սնապարծիկն փառաց մրցութիւնք եւ զկարի սերտ բարեկամսն՝ անհնարին թշնամիս եւ ատելիս իրերաց գործեցին։ Դարձեալ, եւս իմն մեծամեծ կռիւք ծնանիցին, եւ բազում անգամ յիրաւի իսկ, եթէ այնպիսի ինչ ի բարեկամէն ոք խնդրիցէ, որ չիցէ ինչ ի դէպ եւ վայելուչ, զի կամ սպասաւորք նորա անառակ ցանկութեանն, եւ կամ թիկունք եւ օգնական անիրաւութեան լինիցին։ Զոր եթէ չառնուցու ոք յանձն, թէպէտ եւ գործ ազնուական գործէ, բայց սակայն նոցա՝ որոց չառ յանձն հաւանել, այնպէս իմն թուի եթէ զօրինօք բարեկամութեանն անցանիցէ. իսկ որ իշխիցենն զամենայն ինչ ի բարեկամացն խնդրել, յայտ իմն այնու առնեն,

եթէ եւ խնքեանք եւս վասն բարեկամին զամենայն առնելոց են։ Նոցա տրտունջքն՝ ոչ զբաղմաժամանակեան ընտանութիւնն միայն ջնջեալ եղծանեն, այլ եւ ատելութիւնս մշտնջենաւորականս ծնանիցին։ Այսչափ անհնարին աղէտք եւ տագնապք պատեալ պաշարեալ են զբարեկամութեամբ, որպէս զի թէ յայնմ ամենայնէ ոք զերծանիցի, ոչ միայն գործ իմաստութեան գործիցէ, այլ եւ երջանիկ եւս լինիցի, որպէս Ակիպիոն ասէր։



## ԺԸ

Նմին իրի նախ զայն իմն տեսցուք, թէ հաճոյ իցէ, եթէ որչափ ինչ յառաջադէմ արժան իցէ լինել սիրոյ ի բարեկամութեան։ Եթէ ունէր բարեկամս Կորիոզանոս, պա՞րտ ինչ էր նոցա ընդ նմա ի մարտ պատերազմի ի վերայ հայրենի աշխարհին յառնել. միթէ կա՞յր ինչ հարկ ի վերայ բարեկամացն Վիսկեղինեայ՝ որ թագաւորութեան թեկն ածէր, եւ կամ Սպ. Մեղեայ՝ թիկունք եւ զօրաւիգն նոցին լինել։

Տի. Գրակքոս յորժամ անհնարին տագնապս ի վերայ ընկերհաշտութեան հասուցանէր, տեսանէաք եթէ ի Կ. Տուբերոնեայ եւ ի զուգական բարեկամացն լքեալ թողեալ էր։ Այլ Կ. Բղոսիոս կումանացի ասպնջական ձերոց ընտանեաց, Ակեւողա, յորժամ եկն առ իս՝ զի վասն ներելոյ թողութեան աղաչիցէ, մինչդեռ ի խորհրդդեանն մօտ առ Գ. Լինատ եւ առ Հռուպիղ բդեաշխան էի, զայս ինչ պատճառս ածէր ի մէջ, զի ներիցեմ նմա. Այնչափ ինչ, ասէ, Տի. Գրակքոս մեծարոյ էր ինձ, մինչեւ համարէի իմն եթէ զոր նայն կամիցի, պարտ իցէ ինձ առնել։ Յայնժամ հարցի ցնա. Եթէ կամէր զի հուր ի Կապիտողիոնն արկանիցես, իշխէի՞ր եւ զայն առնել։ Չկարէր նա, ասէ, այնպիսի ինչ կամել։ — Այլ թէ կամէր։ — Անսայի, ասէ։ Տեսանես քանի անարժան են բանքս. եւ արդարեւ արար իսկ այնպէս, մանաւանդ թէ եւս իմն աւելի անհնարին չարիս քան զոր ասացն, գործեաց։ Քանզի Տի. Գրակքեայ ոչ հնազանդ միայն եղեւ, այլ եւ գլուխ եւս խակագործ ստահակութեանն եկաց. եւ ոչ ընկեր լոկ եւ գործակից նորա մոլեգին կա-

տաղութեանն, այլ եւ առաջնորդ եւս զանձն ընծայեցուցանէր։ Յայն սակս վասն սորին անհանճարութեան զարհուրեալ ի նորոգ հարցափորձէն, մազապուր փախըստեայ յՄիսիացւոց աշխարհն գնայր, եւ անձամբ զանձն ի թշնամեաց ձեռս մատնէր, եւ զանհնարին վրէժ ընկերհաշտութեանն լուծանէր։ Արդ չէք ինչ չմեղադրութիւն յանցանացն՝ զոր վասն բարեկամին ոք յանցանիցէ։ Եւ քանզի կարծիք առաքինութեանն՝ բարեկամութեան առիթ լինին, յորժամ յառաքինութենէն կասիցէ ոք, կարի դժուարին լինիցի այնուհետեւ բարեկամութեանն կալ յակատանի։

Եթէ արդար ինչ համարիցիմք շնորհել բարեկամացն զամենայն ինչ զոր խնդրիցեն, եւ կամ ընդունել զոր ի նոցանէն խնդրիցեմք, կատարեալ յիմաստութեանն եմք, եթէ ոչ ախտք ինչ ի ներքս խառնիցին. այլ զայնպիսի ինչ բարեկամաց տեսեմ, որ առաջի աչաց իցեն, զորս եւ տեսանիցեմքն իսկ, կամ զնոցին յիշատակս ցանգ ի մտի ունիցիմք, եւ կամ զի ամենեցուն յայտնի եւ ծանօթ իցեն։ Ընդստին ի սոցանէ պարտ եւ պատշաճ է մեզ առնուլ օրինակս նմանութեան, եւ առաւել ի նոցանէ որ կարի միջամուխք յիմաստութիւնն իցեն։

Յայտ իսկ է մեզ եթէ Պապոս Եմիղիոս կարի ընտանութեամբ ընդ Կ. Լուսկինեայ էր, քանզի այնպէս իմն ի նախնեացն ընկալաք, երկիցս բդեշխք եւ համարակարք կացին ի միասին. յիշատակի եւ այս եթէ յայնժամ Մ. Կուրիոս եւ Տի. Կորունկան ընդ սոսին եւ ընդ միմեանս եւս ընտանեգոյնք էին։ Եւ արդ ո՞ ոք կարիցէ կասկած ի մտի ունել, թէ խնդրեաց ոք ի նոցանէ ի բարեկամէն իւրմէ այնպիսի ինչ՝ որ հակառակ հաւատարմութեանն եւ երդման եւ ընկերհաշտութեան իցէ։ Այլ զի՞նչ հարկ ի վերայ կայցէ այսպիսի ինչ ասել վասն արանցս այսոցիկ, զի եթէ խնդրէր եւս, չէր ընդունելոց, քանզի լաւք եւ առաքինաւորք էին արքն. իսկ արդ որ զայսպիսի ինչ յորժամ աղաչիցին՝ կատարիցէ, եւ կամ ինքն յայլմէ խնդրիցէ, ո՞չ ապաքէն գործ անարժան գործէ։

Ի սոյն մոլորութիւն զառածան եւ Գ. Կարբոն եւ Կատոն. քանզի թէպէտ եւ ոչ ինքնին ի բռնութիւնս

թեւակոխէին, բայց սակայն Տի. Գրակքեայ բռնութեանցն հաճեալք՝ զնորին զհետ երթային. մանաւանդ Գայլոս եղբայր Կատոնի՝ որ յառաջագոյն դոյզն ոք էր, այլ այժմ եւ նա սաստիկ հակառակութեամբ ի վերայ ընկերհաշտութեանն յարուցեալ էր։



Այսուհետեւ այս ինչ օրէնք ի բարեկամութեանն հաստատեսցին, մի անպատեհս ինչ խնդրել, եւ ոչ՝ թէ ի մէնջ խնդրիցեն, կատարել։ Զի ոչ պատշաճ ինչ չմեղայլութիւնն է, որ եւ ընդունելի իսկ չէ, յորժամ խոստովան ոք լինիցի թէ վասն բարեկամին յանցուցեալ իցէ, եւ կամ ընդդէմ ընկերհաշտութեանն ստահակեալ՝ եւ այնպէս կամիցի արդարանալ։ Վասնզի յայնպիսի ինչ վայրի զետեղեալ եմք, փաննիէ եւ Սկեւողա, զի հարկ ի վերայ կայ մեզ զհանդերձեալ դէպսն ընկերհաշտութեանն կանխաւ տեսանել։ Վասնզի խոտորեցան սակաւիկ մի բարք մեր եւ գնացք ի յօրինաւոր կարգաց նախնեացն։ Տի. Գրակքոս գուն եդեալ ջանայր թագ կապել եւ զարքունական իշխանութիւնն առնուլ, որ եւ թագաւորեաց իսկ սակաւ ինչ ամիսս։ Իցէ տեսեալ եւ կամ լուեալ սոյնպիսի ինչ ազգն Հռոմոց։ Սմին բարեկամքն իւր եւ մերձաւորք յետ իւրոյ մեռանելոյ նմանողք եղեն. զորոց զանհնարին չարիսն՝ զոր ընդ Սկիպիոն անցուցին, չկարեմ առանց արտասուաց պատմել։ Վասնզի Կարբոնի՝ որչափ ձեռնհաս էաք, վասն նորոգ պատժոցն Տի. Գրակքեայ ներեցաք։ Այլ թէ զինչ ակն զռամկապետութենէ Կ. Գրակքեայ ունիցիմ, չէ համարձակ ածել զմտաւ. քանզի հանապազ տարածանի ժանտն եւ ապականութիւնն՝ որ սկսաւ, ապա ուրեմն ի կատարումն երթեալ հասանիցէ։ Տեսանէք իսկ ի տախտակին եթէ որչափ ինչ վնասք գործեալ իցեն յառաջագոյն՝ նախ Գաբինեան օրինօքն, եւ յետ երկուց ամաց Կասսիականաւն[13]։ Տեսանեմ եթէ զատեալ անջատեալ է ժողովուրդն ի ծերակուտէն, եւ կարծեօք խառնաղանճ բազմութեանն մեծամեծ իրք վճարին. քանզի բազումք այնմ

իմն ուշ ունին թէ զիարդ մարթ իցէ զայն առնել, եւ ոչ թէ որով օրինակաւ հակառակ կալ այնմ հնար իցէ։

Նա ընդէր իսկ զայս ամենայն բանս յաճախիցեմ. այլ զի յայտ լինիցի եթէ ոչ ոք առանց բարեկամաց յայսպիսի իրս մտաբերիցէ։ Այլ վասն պարտ եւ պատշաճ է պատուէր ի վերայ դնել լաւացն, զի թէ յայսպիսի բարեկամութիւն անգիտութեամբ ինչ անկեալ իցեն, մի ինչ համարիցին, եթէ՝ թէպէտ եւ անհնարին վնասս ընկերհաշտութեան բարեկամին հասուցանիցէ, չիցէ նոցա օրէն ի բաց ի նմանէ հեռանալ։ Իսկ յոռեացն եւ անպիտանեաց պարտ է պատիժս սահմանել, եւ ոչ նուազագոյն ինչ նոցա՝ որ կցորդք եւ արբանեակք այլոց ի չարիսն իցեն, քան նոցին՝ որոց գտակն եւ առաջնորդ անօրէնութեան լեալ իցէ։ Ո՞ ոք պայծառագոյն քան զԹեմիստոկղէս ի Յունաց աշխարհին եղեւ, ո՞ ոք հարստագոյն. որ մինչ զօրավարն էր ի պարսկական պատերազմին՝ զՅունաց աշխարհ ի ծառայութենէն թափէր. այլ յորժամ վասն նախանձուն եւ ատելութեան յաշխարհէն վտարէր, չունէր ժոյժ ապիրատութեան իւրոյ աշխարհին, որում պարտ էր տանել մտադիւր մտօք։

Զայն ինչ զոր Ի. ամօք յառաջ Կորիողանն[14] առ մեզ գործեալ էր՝ եւ նա գործեաց[15]։ Բայց սակայն ոչ ոք նոցա թիկունք եւ զօրաւիգն ընդդէմ հայրենի աշխարհին գտանէր. յայն սակս եւ երկոքին եւս անձանց արարին։ Սմին իրի եթէ բարեկամութեանն բարրանօք կցորդ ոք անօրինին լինիցի, ոչ միայն չէ պատշաճ չմեղադրութիւն զայն համարել, այլ եւ բազում պատիժս ի վերայ ածել, զի մի ինչ կարծիցի թէ համարձակ իցէ, յորժամ ի մարտ պատերազմի ի վերայ հայրենի աշխարհին բարեկամին յառնիցէ, ընկեր եւ գործակից նմին գտանել։ Նա քանզի սկիզբն այնմ ապիրատութեան եղեւ, կարի կասկածեմ զի մի առ յապա ժամանակս սոյն աղէտք եւ մերում հայրենեաց հասանիցեն։ Իսկ ինձ քան զայժմու պայմանաց ընկերհաշտութեանն, աւելագոյն զհանդերձելոցն՝ յորում յետ իմոյ մեռանելոյ գտանիցի, հոգ ի մտի կայ։



Այսուհետեւ սոյն այս առաջին օրէնք բարեկամութեանն հաստատեսցի, զի իրս վայելուչս ի բարեկամէն խնդրիցեմք, եւ վասն նոցա գործս լաւութեան գործիցեմք: Մի ինչ կայցեմք մնայցեմք դանդաղեալք, զի խնդրիցէ ոք ինչ ի մէնջ: Յանապազ փոյթն եւ յօժարութիւն մօտ կայցէ եւ յապաղութիւնն քաջ ի բաց հեռագոյն: Բազում համարձակութեամբ եւ յօժարութեամբ տայցեմք խորհուրդս: Ճոխութիւն բարեկամացն՝ որ թելադիրն եւ յորդորիչ ի լաւ անդր լինիցին, բազում զօրութիւն ունիցի, զոր ի կիր արկանիցէ ի խրատել՝ ոչ միայն յայտնապէս եւ համարձակութեամբ, այլ եւ յորժամ հարկ ի վերայ կայցէ, սաստիկ բանիւք. սակայն պարտ եւ պատշաճ է, զի եւ նա զոր խրատիցէն, մտադիւրութեամբ անսայցէ:

Ինձ այսպէս թուի եթէ ոմանց՝ զորոց լսեմ թէ իմաստունք ի Յունաց աշխարհին կարծիցին, ցանգ նորանշան՝ եւ զարմանալի իրս ասելոյ փոյթ ի մտի կայ, եւ զամենայն իրաց բազում նուրբ բանիւք ճառ արկանելոյ: Այլոցն այնպէս իմն թուի եթէ արժան իցէ խորշել ի բազմացն բարեկամութենէ, զի մի հարկ ինչ լինիցի միումն վասն բազմաց ի հոգս եւ ի վարանս մտանել. եւ դարձեալ թէ իւրաքանչիւր ումեք իւր իրք շատ եւ բաւական իցեն. իսկ օտարոտի ինչ իրաց միջամուխ լինել կարի ծանրատաղտուկ իցէ: Առաւել հեշտական է, ասեն, ընդարձակագոյն զերասանակս բարեկամութեանն թողուլ, զոր թէ կամիցիս, ձգեալ ամփոփիցես, եւ յորժամ ախորժիցես, ի բաց արձակիցես: Քանզի անկասկածն լինել, ասեն, գլուխ երանելի կենաց է, յորում չկարիցէ ոգին վայելել, եթէ ինքն միայն առանձին վասն բազմաց ի տագնապ երկանց գտանիցի:

Իսկ կէոք եւս իմն անպատեհագոյնս եւ անհեդեդս բարբառին, զորս սակաւիկ մի յառաջ կարճառօտիւք համառօտս յանդիման կացուցաք, թէ վասն պաշտպանութեան եւ օգնականութեան, եւ ոչ վասն սիրոյ եւ խնամոց՝ բարեկամութեան արժան իցէ ցանկանալ: Վասն որոյ որչափ ուրուք ոյժ, ասեն, սակաւ իցէ եւ դոյզն զօ-

րութիւնն, դոյնչափ աւելագոյն բարեկամութեան ցանկանայցէ. դմին իրի իսկ կանայք առաւել քան զարսն զբարեկամութեան պաշտպանութիւն խնդրեն, եւ անինչքն քան զընչաւէտսն, եւ եղուկքն՝ քան զայնոսիկ՝ որ երանիկքն եւ երջանիկք հաշուեցին:

Ո՛ մեծապայծառ իմաստութեան. քանզի թուի ինձ թէ զոսկեճաճանչ արեգակն յաշխարհէ բառնայցեն, որ փոյթ յանձին կալեալ ճգնիցին ջնջել զբարեկամութիւնն ի կենաց մարդկան, քան զոր չէ մեր ազնուագոյն ինչ եւ հեշտական յանմահ դիցն ընկալեալ: Քանզի զի՞նչ այն անկասկած հանգիստն իցէ, որ թէպէտ եւ ցանկալի եւ տենչական է, սակայն է ուրեք զի հարկ է մերժել զայն եւ հալածել. չէ ի դէպ ի վայելուչ ինչ իրաց եւ ի գործոց լաւութեան ի բաց խորշել, զի մի ի հոգս եւ ի տատամնութիւն անկանիցիմք: Զի եթէ ի հոգոց փախչիցիմք, հարկ է եւ յառաքինութենէն ի բաց որանալ. քանզի առաքինութեանն պարտ եւ պատշաճ է բազում հոգովք եւ անհնարին աշխատութեամբք զիւր հակառակն մերժել. որպիսի ինչ լաւութեանն՝ զչարութիւն, եւ զգաստութեանն՝ զցանկութիւն եւ ժրութեան՝ զվհատութիւն: Այլ վասն տեսանեմք եթէ գործք անիրաւաց՝ արդարոց բազում ցաւոց պատճառք լինիցին, եւ տկարացն՝ քաջացն եւ առաքինեաց. նոյնպէս եւ որ պարկեշտութեան կեանս կեցեն, ընդ այլոց խառնակեցիկ կեանս կարի տրտմիցին: Ապա առաքինաւոր եւ հաստատուն ոգւոյ է խնդալ եւ ուրախ լինել ընդ լաւութիւն, եւ ընդ նոցին հակառակն տրտմել եւ տխրել:

Ամին իրի իսկ եթէ ցաւք ինչ ի միտս իմաստնոյ անկանիցին, որ անկանիցին իսկ՝ եթէ չհամարիցիմք թէ բնութիւն մարդկեղէն խլեալ իցէ ի սրտէ նորա, ապա զի՞նչ պատճառք իցեն զբարեկամութիւնն ի կենաց բնաջինջ առնելոյ, զի մի վիշտս ինչ վասն այնորիկ հասանիցէ վշտանալ: Զի եթէ զայդս շարժմանց ոգւոցն ի բաց բառնայցեմք, ոչինչ ընդհատ այնուհետեւ, ոչ ի ճարակաւորաց միայն, այլ եւ ի քարէն եւ ի փայտէ եւ յայլոց ինչ սոցին նմանեաց մարդն գտանիցի: Քանզի ոչ եթէ, որպէս ոմանք դանդաչեն, երկաթի ինչ

իցէ առաքինութիւն, այլ որպէս եւ յայլ եւս իրս, նոյնպէս եւ ի բարեկամութեան՝ քաղցր եւ համբոյր է, որպէս զի ընդ բարիս բարեկամին ուրախ լինիցի, եւ ընդ նորա վիշտս տրտմիցի: Վասն այնորիկ նեղութիւնն այն եւ անձկութիւն չէ ձեռնհաս զբարեկամութիւն ի կենաց բառնալ, որպէս եւ ոչ առաքինութիւնն, վասն զի հոգս եւ տառապանս ունի, խոտան ինչ իցէ:



ԺԳ

Այլ յորժամ բարեկամութիւն ոք ընդ այլում խառնիցէ, որպէս կանխագոյն ասացաք, այս ինքն է եթէ նշանակ ինչ առաքինութեան յուրուք վերայ երեւիցի եւ մեւս եւս ոք առաքինի երթեալ ընդ նմին միաբանիցի, հարկ է թէ սէր անտի ծնանիցի:

Քանզի զի՞նչ ինչ անպատեհագոյն քան զայն կայցէ, զգուր եւ զնոտի իրս, որպիսի ինչ զպատիւս եւ զփառս, զշինուածս եւ զհանդերձս եւ զայլն եւս զմարմնաւոր սպասն խնդրել եւ նոքօք ուրախ լինել, եւ չհաճել ինչ ընդ ոգի առաքինի, որ կարիցէ խնամս ընդունել եւ զայնր փոխարէնս հատուցանել: Քանզի զի՞նչ քաղցրագոյն եւ հեշտականագոյն քան զհատուցումն խնամոց եւ քան զփոխարէնս սիրոյ եւ երախտեաց:

Իսկ եթէ զայն եւս ի սոյն յարեալ յաւելուցումք, զոր յիրաւի իսկ մարթ է յաւելուլ, թէ չիք ինչ՝ որ այնպէս յօժարեցուցանել եւ յինքն յանկուցանել կարիցէ, որպէս նմանութիւն բարուցն ի բարեկամութեան, դիւրագոյն լինիցի այնուհետեւ հաւանել, թէ արդարեւ լաւք զլաւսն սիրիցեն եւ զիրկ ընդ խառն ընդ միմեանս լինիցին, որպէս թէ մերձաւորք եւ ազգականք եւ բնութեամբն իսկ զօդեալք ընդ իրեարս իցեն: Զի բնութիւն քան զամենայն ինչ աւելագոյն իւրոց նմանեաց ցանկանայ եւ զնոսին ձգեալ առ ինքն ժողովէ: Վասն որոյ այս իսկ յայտ է, Փաննիէ եւ Սկեւողա, որպէս ինձ թուի, եթէ ի լաւաց միջի ի հարկէ իմն ծնանիցին սէր եւ ընդելական խնամք, որ աղբեւր բարեկամութեանն է անդրստին ի բնութենէ կարգեալ. այլ այնմ լաւութեան եւ խառնիճաղանճ բազմութիւնն եւս հաղորդ է: Քանզի

չէ ինչ տմարդի առաքինութիւն, եւ ոչ աննուէր եւ ամբարտաւան իցէ. որ ամենայն իսկ համօրէն ազգաց պաշտպանէ, եւ զնոսին ազնուագոյն դարմանէ. որ թէ խորշէր ինչ եւ գարշէր ի սիրոյ խառնաղանձ ռամկին, ապա եւ առնէր իսկ ոչ այնպիսի ինչ։ Եւ դարձեալ թուի ինձ եթէ որ վասն շահից ինչ ակնկալութեան բարեկամութիւնս կերպարանիցի, զցանկալի զօդ բարեկամութեան ի բաց բառնայցէ։ Քանզի ոչ այնպէս օգտութիւնն որ ի բարեկամէն ծնանիցի, որպէս նորին սէր ուրախ առնիցէ. եւ յայնժամ քաղցր եւ հեշտական գործ բարեկամին լինիցի, յորժամ սիրովն եւ յօժարութեամբ գործիցի։ Իսկ վասն կարօտութեան զբարեկամութիւնն ունել, այնչափ ինչ օտար եւ անընտանի է, զի նոքին որ բազում ինչս եւ ապարս ունիցին, եւ հանճարով եւս եւ քաջութեամբ զարդարեալք եւ ամրացեալք՝ չկարօտանայցեն ումեք, առատամիտք եւ երախտագործք ի բարեկամութեան լինին։ Եւ չգիտեմ թէ հարկ ինչ իցէ բարեկամին չկարօտանալ իւիք։ Քանզի զիա՞րդ իսկ մարթ էր մերոյ սիրոյն երեւել, եթէ ոչ մերովք խորհրդովք եւ վաստակովք ի խաղաղութեան ժամանակի եւ ի պատերազմի կարօտ ինչ լինէր Սկիպիոն։ Այսուհետեւ յայտ իսկ է թէ ոչ բարեկամութիւնն վասն օգտութեան իցէ, այլ օգուտն եկն զհետ բարեկամութեան։

ԺԱ

Ապա չէ իսկ ի դէպ ունկնդիր լինել նոցա՝ որ անձնատուր զգայնաց եւ փափկութեանց իցեն, յորժամ զբարեկամութենէ՝ որում չիցենն տեղեակ, այնու զի ոչ վարեալ նովաւ իցեն, եւ ոչ մտօք զհանգամանսն ծանուցեալ, ճառիցեն։ Զի՞ այն ոք իցէ որ ոչ սիրել զոք կամիցի, եւ ոչ սիրելի ումեք լինել, յորժամ ի լիութեան եւ ի յղփութեան համօրէն իրաց կեանս վարիցէ։ Բռնաւորաց են այս կեանք, որ ամենեւին լոկ ի հաւատարմութենէ եւ ի սիրոյ են, եւ չէ իսկ մարթ հաստատութեամբ վստահ ի նոցա խնամսն լինել. ամենայն ինչ ցանց կասկածանօք է, բնաւ ի վարանի. իսկ բարեկամութեան եւ ոչ սակաւ ինչ նշմարանք ի նմին երեւին։ Քան-

զի ո՞ ոք սիրիցէ զայն՝ յորմէ երկնչիցին, եւ կամ զնա՝ որ ի նմանէն երկիցէ։ Պահել պահեն զբարեկամութիւնն առ ժամանակ մի կերպարանօք միայն, այլ յորժամ անկանիցին, որպէս բազում անգամ դէպ լինիցի, յայնժամ ապա դիւրին իցէ ի միտ առնուլ թէ որչափ աղքատք ի բարեկամաց էին։ Պատմեն իմն եթէ Տարկուինոս ի ժամանակի վտարանդութեանն խօսեցեալ իցէ այսպէս զսոյն ձեւ. Այժմ իսկ ծանեայ թէ ո՛ ոք ի բարեկամաց իմոց ճշմարտութեամբ զբարեկամութիւնն ունէր, եւ ո՛ կերպարանօք եւեթ, քանզի չեմ ձեռնհաս փոխարէնս ինչ ումեք առնել։ Թէպէտ եւ զարմանք թուին ինձ, թէ զիա՞րդ կարաց նա ունել բարեկամս նովին ամբարտաւանութեամբ եւ ժպրհութեամբ։ Եւ որպէս բոյս բարուց նորա զորմէ ասացաքն, չկարէր ճշմարիտ բարեկամս յարդարել, սոյնպէս եւ իշխանութիւն հարստացն, արգել եւ խափանիչ հաւատարիմ բարեկամութեանն լինիցին։ Զի բախտն ոչ միայն կոյր եւ զաչացու է, այլ եւ զայնոսիկ՝ որ ի նմին շաղեալ պատեալ իցեն՝ կոյրս յարդարէ։ Վասն որոյ իւրեանց յամառութեամբքն եւ խեռութեամբ արտաքս իմն ըստ մարդկեզէն բնութիւնն ելանեն. եւ այնուհետեւ քան զամենայն ինչ դժնդակագոյն եւ ան հանդուրժական անհանճար բախտաւորն գտանի։ Եւ այնմ եւս արժան է ուշ ունել, զի որ յառաջագոյն ընդելական վարս ունէին, իբրեւ յիշխանութիւն եւ յաւագութիւն հասանիցեն, զհին բարեկամսն խոտան եւ ընկեցիկ համարին, եւ նորոցն ի խնդիր լինիցին։ Եւ զինչ քան զայն անհանճարոյ կայցէ, զի զոր միանգամ ընչիւք եւ արարովք եւ զօրութեամբ կարիցեն արկանել ի բուռն, որպիսի ինչ երիվարս անհամարս, բազում դաստակս ծառայից եւ սպասաւորաց, եւ այլ եւս գունակ գունակ պատմուճանս բազմապայծառս եւ սպաս պատուականս, զամենայն կազմեն եւ պատրաստեն, եւ չառնեն ինչ փոյթ բարեկամս ունելոյ, որ մեծապայծառ եւ գեղեցիկ կարասի է կենաց մարդկան։ Քանզի զայլ ինչ իւրս յորժամ պատրաստիցեն, չգիտեն ո՛ւմ պատրաստեն, եւ ոչ ո՛յր վասն աշխատն լինիցին. զի որ գեր ի վերոյ ուժգնութեամբն իցէ, նորա իսկ է այն ամենայն։ Իսկ բարեկամութեանն ստացուած կայ մնայ հաստատուն եւ

սողոյդ իւրաքանչիւր ումեք՝ որ զայն ստանայցէ. որպէս զի եթէ պարգեւք բախտին մնայցեն, սակայն որ լքեալ եւ զրկեալ ի բարեկամաց իցէ, չկարէ քաղցր եւ հեշտական կեանս ունել: Այլ վասն սորին մինչեւ ցայս վայր:



Ժ.Զ.

Բայց այժմ պարտ եւ պատշաճ է եւ զսահմանս բարեկամութեանն կարգել, այս իսկ է զպայման սիրելոյ: Երիս ինչ կարծիս վասն սորին իւրաց լեալ տեսանեմ. բայց սակայն եւ ոչ միում ի նոցանէ առնում յանձն հաւանել: Առաջինն այս ինչ է թէ այնպիսի ինչ սէր ընդ բարեկամսն ունիցիմք, որպէս ընդ մեր իսկ անձնն ունիմք: Եւ երկրորդն՝ թէ մեր գութն կշիռ հաւասարակ գթոյ բարեկամացն՝ զոր առ մեզն ցուցանեն, գտանիցի: Իսկ երրորդն՝ թէ որչափ ինչ մեծարգի զանձն ոք հաշուիցի, նոյնչափ եւ ի բարեկամէն համարիցի: Չառնում յանձն եւ ոչ զմին ի կարծեացն: Զի առաջինն՝ որ ասէն, եթէ իւրաքանչիւր ոք նոյն եւ միօրինակ խնամովք եւ անձին եւ բարեկամին դարման տանիցի, քաջ ի բաց հեռի ի ճշմարտութենէն է: Քանզի բեւր ինչ իրք են՝ զորս թէպէտ եւ վասն մեր չառնիցեմք, վասն բարեկամաց յօժարագոյնս կատարեմք: Որպիսի ինչ, աղաչել զանարժանն՝ եւ կամ յաղերս անկանել, դառն եւ սաստիկ բանիւք յարձակել ի վերայ ուրուք, եւ բազում սաստկութեամբ հալածական առնել, ի մեր իրս չեն վայելուչ, բայց սակայն յիրս բարեկամացն կարի պատշաճական եւ վայելուչ իցեն: Եւ է ուրեք զի արք լաւք բազում ինչ յիւրեանց արարոցն ծախեն, զի ի նոսին բարեկամքն քան ինքեանք վայելեսցեն:

Իսկ երկրորդ կարծիքն այն իսկ է, որ սահմանէ զբարեկամութիւնն կշիռ երախտեացն եւ խնամոց: Սովին իսկ այսու նուազիցի եւ ամփոփիցի բարեկամութիւնն: Ինձ այսպէս թուի եթէ ճշմարիտ բարեկամութեանն արժան իցէ մեծագոյն եւ առատագոյն լինել, եւ ոչ այնպէս հաւաստեաւ միտ դնել, զի մի աւելագոյն քան զոր ընկալաւն՝ հատուցանիցէ: Եւ ոչ երկնչել ինչ պարտ իցէ թէ մի ինչ ի բարեկամութեանն զուր եւ ընդ

վայր վատնիցի կամ յերկիր հեղուցու, եւ կամ կարի իմն դիզեալ աղխաղխիցի։

Այս իմն վատթարագոյն երրորդ սահմանն է՝ որ ասէն, թէ զնոյն ինչ կարծիս զոր զանձնէ ոք ունիցի, եւ բարեկամին պարտ իցէ ունել։ Գտանին են իսկ ոմանք՝ որ կարի վեհերոտքն են, եւ չունին ինչ ակն ինչս յաճախելոյ եւ երջանիկ կեանս կելոյ։ Այս ոչ բարեկամի ինչ է նմանող նորա վհատութեանն լինել, այլ մանաւանդ գուն եդեալ ջանալ, զի քաջալերս նորա ոգւոյն մեղկելոյ եւ լքելոյ մատուցանիցէ, եւ խորհուրդս ազնուականս, եւ բազում ակնկալութիւն ի նորա միտսն արկանիցէ։ Այսուհետեւ պարտ եւ պատշաճ է այլ իմն սահմանս կարգել բարեկամութեանն. բայց զայն նախ կամիմ յայտ առնել, զոր Սկիպիոն սովոր էր յանդիմանել։ Ձիք ինչ, ասէր, բարբառ թշնամի եւ հակառակորդ բարեկամութեան քան զայնր՝ որ ասիցէն, թէ այնպէս զբարեկամն արժան իցէ սիրել, որպէս թէ երբեմն զնա ատելոց իցէ, եւ չառնոյր իսկ յանձն հաւանել եթէ այս Բիանդեայ բանք իցեն՝ որ յեւթն իմաստնոց համարի էր, այլ կծծոյ ուրուեմն եւ փառասիրի, կամ այնպիսւոյ ուրուք՝ որ զամենայն ինչ յիւր զօրութիւնն ձգիցէ։ Զիա՞րդ բարեկամ լինել ոք կարիցէ՝ որ համարիցին եթէ մարթ է նմա ի թշնամութիւն դառնալ։ Թէ այնպէս ինչ էր, հարկ իսկ էր ցանկալ եւ փափաքել, զի բարեկամն յաճախագոյնս յանցանիցէ, որով բազում պատճառս գտանիցէ զնա ըստգտանելոյ. սմին հակառակ ընդ ուղղութիւնս բարեկամին եւ ընդ հանգիստ նորա պարտ էր խանտալ եւ տրտմել եւ նեղեալ տագնապել։

Վասն որոյ այս պատուէր, մի՛ ուրուք եւ իցէ, բարեկամութեան կորուսիչ կարէ լինել։ Զայն առաւել արժան էր պատուիրել, զի այնպէս փոյթ յանձին ունիցիմք ի յարդարելն բարեկամութիւնս, զի մի զոր կարիցեմքն երբեմն ատել, սկսանիցիմք սիրել։ Իսկ եթէ ի ժամանակի ընտրութեանն ոչ բարւոք եւ ըստ պատշաճի ընտրեալ իցեմք, այնպէս իմն Սկիպիոնեայ թուէր, թէ առաւել պարտ եւ պատշաճ իցէ այնմ տանել՝ եւ ոչ զժամանակս թշնամութեանն ածել զմտաւ։

## ԺԻ

Այլ արդ իմն այսպէս թուի, եթէ զայս ինչ սահմանս արժան իցէ ի կիր արկանել, զի բարեկամքն բարս անարատս եւ ազնուականս ունիցին, եւ յամենայնի եւ ի բնաւի՝ եւ ի խորհուրդս եւ ի կամս հաղորդք եւ միաբանք իրերաց լինիցին։ Որպէս զի եթէ հարկ ինչ լինիցի անարժան կամաց բարեկամացն ձեռնտու լինել, յորժամ կամ կեանք նոցա եւ կամ համբաւ ի վտանգի կայցէ, պարտ է ի ճանապարհէն խոտորել, միայն թէ մի անպատեհ ինչ եւ առականաց իրքն իցեն։ Զի է ինչ սահման, ցորչափ մարթ է ներել բարեկամութեանն։ Բայց սակայն եւ զհամբաւոյ չէ պարտ անփոյթ առնել, եւ ոչ զոյժն ինչ կազմած համարելի է զխնամս քաղաքացեացն. զոր ողոքանօք եւ սուտակապաշտութեամբ ստանալ բազում ամօթոյ եւ ծանականաց իրք են։ Զառաքինութիւնն՝ որում սէրն ստէպ երթայ զհետ, չէ արժան ի բաց մերժել։ Բազում անգամ տրտնջէր իմն եւ հեծէր Սկիպիոն, քանզի միւսանգամ առ նա գամ, զի նորա իսկ են ամենայն բանքս վասն բարեկամութեան, թէ կարի մտադիւրագոյն են մարդիկ յայլ ամենայն իրս, քանզի կարեն ասել եթէ որչափ ինչ օդիս եւ այծիս իւրաքանչիւր ոք ունիցի, այլ թէ քանի բարեկամք իցեն նոցա, չկարեն յայտ առնել. վասն զխաշինս ստանալոյ ցանգ ջանան եւ ճգնին, այլ վասն զբարեկամսն ընտրելոյ չունին ինչ փոյթ յանձին, եւ չունին ինչ նշանս եւ ծանօթս՝ որովք ընտրել մարթասցեն թէ ո՛ ոք պատշաճ ի բարեկամութիւնն իցէ։ Պարտ եւ պատշաճ է ընտրել զայնպիսիս՝ որ հաստատունքն եւ անշարժք իցեն եւ ամենեւին իսկ պնդագոյնք. այլ այսպիսիքն դուն ուրեք եւ անօսր գտանիցին. զորոց եւ դատաստան առնել կարի դժուարին իցէ այնոցիկ՝ որոց չիցէ զփորձ առեալ. իսկ զփորձ անդէն ի բարեկամութեան պարտ է առնուլ։ Այսպէս բարեկամութիւնն կանխէ քան զդատաստանն, եւ չտայ թոյլ զչափ առնուլ եւ փորձել։

Այլ արդ առն իմաստնոյ է զառաջին եռանդն սիրոյ եւ բարեկամութեան ի չափու ունել, եւ զնոսին իբրեւ զկառս վարել. զի զոր օրինակ կառավար խելամուտ նախ

զփորձ զերիւարացն առնու, նոյնպէս եւ նա նախ խելամուտ բարուց բարեկամացն լեալ յիւր իւնչ, այնպէս զբարեկամութիւնն արկանիցէ ի կիր։ Ոմանք վասն սակաւ արծաթոյ բազում անգամ երեւիցին թէ որչափ թեթեւք իցեն. եւ կէսք եւս՝ որ սակաւուքն չշարժիցին, ի յաճախագոյնսն ճանաչին։ Այլ եթէ գտանիցին եւս ոմանք՝ որ համարիցին եթէ կարի անարգն եւ խոտան իցէ զինչս քան զբարեկամութիւն նախամեծար առնել, ո՞ւր ուրեք մարթ իցէ գտանել զայնպիսի ոք՝ որ զպատիւս եւ զաւագութիւն, զիշխանութիւն, զհարստութիւն եւ զճոխութիւն չհամարիցի լաւագոյն քան զբարեկամութիւնն. զի յորժամ ի մի կոյս այս ամենայն դնիցի, եւ ի միւս թեր բարեկամութեանն օրէնք, ոչ առաւել ընդ սոսա քան ընդ այն կամիցին։ Զանզի ի խոտել զաւագութիւն տկար եւ անզօրական գտանի բնութիւն. որում եթէ լքեալ թողեալ ոք զբարեկամութիւնն՝ հասանիցէ, համարի իմն եթէ վաղվաղակի ի մոռացօնս այն անկանիցի 'ւ ընջիցի, այնու զի ոչ վասն դոյզն ինչ պատճառանաց զբարեկամութեամբն զանց արար։

Սակայն որոյ կարի դժուարին է ի նոսա՝ որ ի պատուի իցեն եւ յիրս պետութեան դեգերիցին՝ ճշմարիտ բարեկամութիւնս գտանել։ Զանզի ո՞ւր ուրեք գտանիցեմք զայնպիսի ինչ ոք, որ զպատիւս բարեկամին նախամեծար քան զիւրն առնիցէ։ Նաեւ արդ զխորդ. որչափ ծանր, քանի դժուարին բազմաց երեւիցի ընկեր եւ կցորդ վշտաց լինել։ Դժուարին է գտանել՝ որ զայնպիսիսն առնուցու յանձն։ Թէպէտ եւ քաջ ասաց Ենիոս, եթէ

ԲԱՐԵԿԱՄ ՃՇՄԱՐԻՏ ՅԻՐՍ ՅԵՂՅԵՂՈՒԿՍ ԵՐԵՒԻ·

սակայն երկու ինչ իրք են որ յայտ արարեալ ցուցանեն թէ որչափ ինչ թեթեւք եւ տկարագոյն են բազումք, յորժամ կամ յաջողութիւնս զբարեկամն խոտիցեն եւ ընդ վայր համարիցեն, եւ կամ ի չաջողութիւնսն լքեալ թողուցուն։



## ԺԲ.

Իսկ որ յերկուսին եւս պնդագոյն եւ հաստատուն եւ անշարժ զանձն ի բարեկամութեանն ընծայեցուցանիցէ, զայնպիսին ի դուն ինչ եւ անօսր մարդկան համարոյ, մանաւանդ թէ եւ ի կարգէ դիցն արժան է համարել։

Այլ հիմն նորա հաստատութեանն եւ անմեղկութեան՝ զոր ի բարեկամութեանն խնդրիցեմք, հաւատարմութիւն է։ Զի որ ինչ առանց հաւատարմութեան իցէ, այն եւ հաստատուն իսկ չէ։ Այլ դարձեալ, զանկեղծաւորն եւ զընդել, եւ որ հլուական բարս ունիցի՝ պարտ է ընտրել, զի այս ամենայն հաւատարմութեան է։ Իսկ միտք կամակոր եւ բազմադիմի չկարէ հաւատարիմ լինել, եւ ոչ՝ որ ընդ նոյն ինչ չհաճիցի։

Արժ իսկ եւ պատշաճ է եւ զայն եւս յարել ի սոյն, զի մի յօժարութեամբ զբարեկամին բամբասիցէ եւ կամ եթէ զյանցանաց բարեկամին ամբաստան ոք լինիցի՝ հաւատայցէ. որ արդի ճառեալ հաւատարմութեանն ակն է։ Սովին իսկ այսուիկ առնի ճշմարիտ այն, զոր անդ ուրեմն իսկզբանն ասացաք, եթէ բարեկամութիւնն ի լաւսն եւեթ գտանի։ Քանզի արք լաւք՝ զորս եւ իմաստունս եւս մարթ է անուանել, զերկուս զայս ի բարեկամութեանն պահեն. նախ այնմ իմն ուշ ունին զի մի ինչ կեղծեօք եւ կերպարանօք լինիցի, քանզի անկեղծաւոր մտաց է յայտյանդիման դրսովել, եւ ոչ կերպարանօք զմիտսն բարեքել։ Երկրորդ անգամ՝ զի ոչ միայն զզրպարտութիւնսն՝ որ զբարեկամէն լինիցին, ջանան մերժել, այլ եւ ինքեանք եւս չունին կասկած ինչ ի մտի, եւ չհամարին իսկ թէ ցանգ սակաւիկ ինչ զրկանս հասանիցէ նոցա ի բարեկամէն կրել։

Դարձեալ պարտ եւ պատշաճ է քաղցրախօսուն բանս եւ բարս բարեբարս ի սոսին յաւելուլ, որ չափ ինչ հանդերձանք բարեկամութեան են։ Քանզի տխուրն տրտմութիւն եւ դժնդակութիւն ծանր եւ տաղտուկ է. իսկ բարեկամութիւնն պարտի մեղմագոյն եւ քաղցրագոյն լինել եւ յամենայն ընտանութիւնս յօժարագոյն։

ԺԹ

Այս յայսմ վայրի խնդիր ինչ դժուարին, եթէ արժան իցէ զբարեկամն նորս՝ վարժանաւորս բարեկամութեան, քան զհինսն մեծարոյս համարել, որպէս զերիւարս մատաղս քան զծերացեալսն նախամեծար առնեմք։ Ո վարանք որ անարժան են մարդոյ. զի ոչ եթէ ի բարեկամութենէն հանգոյն այլոց իրաց պարտիմք յագել։ Ամենայն ինչ՝ որ բազմաժամանակեայն է, իբրեւ զգինի հին քաղցրագոյն պարտի լինել. եւ արդարեւ ճշմարիտ է այն որ ասին, թէ Պարտ է բազում գրիւս աղի ճաշակել ի միասին, զի լցցի բարեկամութեանն պաշտօն։

Այլ զերս նորս եթէ յոյս ինչ ակնկալութեան մատուցանիցեն, որպէս զի մարթ իցէ զնոցա պտուղն, որպէս ի տունկսն մրգաբերս, տեսանել՝ չէ պարտ մերժել. սակայն զհնութիւնն արժան է պահել յիւրում կայի։ Քանզի զօրութիւն կանխութեանն եւ ընդելութեան կարի մեծագոյն է։ Եւ վասն նորին իսկ երիւարին՝ զորմէ այժմ յիշեցաք, եթէ չիցէ այլ ինչ արգել, չիք ոք որ ոչ այնու ընդ որ սովորեալն է, առաւել յօժարութեամբ պաշտիցի, քան նովաւ՝ որ թերավարժն եւ տմուղ իցէ. եւ ոչ միայն յայսմ՝ որ շնչաւորն է, այլ եւ յանշունչսն եւս բազում զօրութիւն սովորութիւնն ունի. զի եւ ի լեռնային եւ յանտառախիտ վայրս, յորս երկայնաձիգ ժամանակս դադարեալ իցեմք, ուրախ լինիմք։

Սակայն կարի իսկ մեծ է ի բարեկամութեանն՝ աւագին հաւասար կրսերոյն լինել։ Քանզի բազում անգամ մեծամեծ առաւելութիւնք յուրուք վերայ գտանին, որպիսի ոք Սկիպիոնն, զի այսպէս ասացից, ի մերում ժողովի էր։ Ոչ քան զՓիլոս եւ զՌուպիղիոս եւ կամ զՄումիոս եւ քան զխոնարհագոյն եւ զապաժաման բարեկամս առաւել զանձն համարէր։ Նա եւ զԿ. Մաքսիմոս զիւր եղբայր, զայր ազնիւ, որ չէր ինչ իւիք հաւասար նմին, այլ քանզի երէց էր տիովքն, իբրեւ զաւագ պաշտէր, եւ կամէր թէ իւրքն ամենայն աւագագոյնք քան զինքն լինիցին։

Որում պարտ եւ պատշաճ է ամենեցուն նմանողս իսկ լինել եւ զնոյն առնել. զի եթէ զառաւելութիւն

առաքինութեան եւ զհանճարոյ եւ զբախտի ունիցի ոք, եւ զեւրսն եւս նոցին բաժանակիցս արասցէ եւ մերձաւորացն եւս հաղորդեսցէ. զի թէ անարգք եւ աննշանաւորք նոցա ծնանելքն իցեն եւ կամ եթէ ազգատոհմն նոցա տկար իցէ կամ թափուր ի ստացուածոց, զսոցա արարքն յաւելուցուն, եւ զնոսա ի փառաւորութիւնս եւ յաւագութիւն հասուցանիցեն. որպէս յառասպելսն եւ ի գուսանական խաղսն կայ, թէ որ երբեմն վասն անտեղեակ իւրեանց ցեղին եւ ազգատոհմին լինելոյ, ի ստրկութեան կացին, իբրեւ յայտ եղեն եթէ կամ դիւցազունք եւ կամ արքայորդիք իցեն, եւ յայնժամ եւս առ հովիւսն՝ զորս բազում ամս առ հարս ունէին, պահեցին զընդելական խնամսն[16]. որչափ եւս առաւել պարտ եւ պատշաճ իցէ առ ճշմարիտ եւ առ ստոյգ հարսն առնել: Վասնզի շահ մեծաշահ հանճարոյ եւ առաքինութեանց եւ ամենայն առաւելութեանց յայնժամ մանաւանդ կթիցի, յորժամ եւ ընկերն եւս բազորդ եւ բաժանորդ նոցին լինիցի:



Եւ որպէս նոցա՝ որ ի բարեկամութեանն եւ յազգականութեան աւագագոյնք իցեն, հարկ է ընդ խոնարհագոյնսն զուգական լինել, նոյնպէս եւ սոցա չէ արժան տրտմել, յորժամ զբարեկամն կամ հանճարով, կամ արարովք եւ կամ պատուովք քան զանձինս վերագոյն տեսանիցեն: Յորոց բազումք կամ ցանգ տրտնջեն եւ քրթմնջեն, եւ կամ յանդիմանութեամբ յերեսս հարկանիցեն, մանաւանդ յայնժամ, յորժամ համարիցին թէ ունիցին ինչ՝ զորմէ կարիցեն ասել թէ վասն արքանեկութեան եւ վասն բարեկամութեան, իւրեանց վաստակովքն արարին նոցա: Արդարեւ արժանի դսրովանաց են, որ ցանգ զիւրեանց արքանեկութիւնն յիշեցուցանիցեն. քանզի ի դէպ է զի նա՝ որում արարաւն, եւ ոչ որ արարն զերախտիսն, յուշ ածիցէ:

Արդ որպէս աւագացն հարկ ի վերայ կայ խոնարհել եւ զիջանել ի բարեկամութեան, նոյնպէս եւ կրսերացն սակաւիկ մի ինչ վերացեալ բարձրանալ: Վասնզի

ումանք տաղտուկ զբարեկամութիւնն գործեն, այնու զի կարծեն իմն եթէ խոտեալ անարգին. որ այնմ միայն դիպիցի՝ որ արժանի արհամարհանաց զանձն հաշուիցի։ Զսոսա ոչ միայն բանիւք, այլ և արդեամբք իսկ պարտ և պատշաճ է յայսպիսի կարծեաց զերծուցանել։

Նախ՝ այնչափ ինչ արքանեկութիւն իւրաքանչիւր ումեք արժան է մատուցանել, որչափ ձեռնհասն իցես։ Երկրորդ անգամ, որչափ նա՝ զոր սիրեսն, որում և օգնականն լինիս, տանել մարթայցէ։ Քանզի չես ատակ, թէպէտ և կարի ոք հոյակապ իցես, զամենայն բարեկամս քո ի մեծութիւնս և ի փառաւորութիւնս հասուցանել. որպէս և Սկիպիոն, թէպէտ և կարաց զՊ. Ռուտիղիոս ի բարձ բդեշխութեան մատուցանել, չեղև ձեռնհաս զԼուկիոս զնորին եղբայր յայն պատիւ ամբառնալ։ Այլ եթէ կարող ևս իցես առնել ինչ ումեք, սակայն պարտ է ուշ ունել թէ զինչ ինչ նա կարիցէ տանել։ Յայնժամ պարտ և պատշաճ է զբարեկամութեանցն դատաստան առնել, յորժամ հասակքն զարգանայցեն և միտքն հաստատեալ պնդիցին։ Նա և ոչ հարկ ինչ ի վերայ կայ նոցա՝ որ ի տիս մանկութեան որսոց և գնդաց պարապէին, զայնոսիկ՝ զորս վասն ճարտար յիրսս այսոսիկ լինելոյ սիրէին, ի համար իւրեանց կարեւոր բարեկամացն խառնել։ Քանզի այսպիսի ինչ խնամս և դայեակքն և դաստիարակք վասն կանխութեան իրաւանց պահանջիցեն, զորս չէ պարտ անտես առնել, այլ այլով իմն օրինակաւ պաշտել։ Ապա թէ ոչ, չէ մարթ բարեկամութեանն կալ մնալ հաստատուն։ Քանզի աննման բարուցն՝ յօժարութիւնք աննմանք են, որոց աննմանութիւն քակէ զբարեկամութեանն միաբանութիւն. և ոչ այլ ինչ պատճառք իցեն, որոց վասն լաւք յառեացն և յոռիք լաւաց բարեկամ լինել չկարիցեն, այլ սոյն այս միայն զի ընդ նոցա բարսն և ընդ յօժարութիւն բազում խտրոց և անջրպետութիւն ի միջի կայ։

Կարի իսկ յիրաւի մարթ է զայս ինչ օրէնս կարգել վասն բարեկամութեանն, զի մի անչափ խնամքն՝ որ բազում անգամ և յաճախագոյնս լինին, խափանիչ մեծաշահ օգտութեանց բարեկամացն լինիցին։ Քանզի և ոչ, զի յառասպելսն դարձայց, Նէոպտողեմ[17] զՏրովա-

ցուց քաղաքն կարէր առնուլ, եթէ Պլուկոմեդեայ՝ առ որում վարժեալն եւ հրահանգեալ էր, կամէր անսալ, որ բազում արտասուօք զնա կամէր արգելուլ[18]։ Այլ բազում անգամ վասն մեծամեծ ինչ իրաց արժան է ի բարեկամէն ի բաց գնալ. զոր եթէ անտես առնել ոք կամիցի, այնու զի անձուկ բարեկամին ոչ այնպէս դիւրաթողացուցանէ, այնպիսին ի բնէ իսկ տկար է եւ մեղկ, եւ վասն այնորիկ իսկ չէ պատշաճ ի բարեկամութիւն։ Այլ յամենայնի պարտ է եւ զայն զոր ի բարեկամէն խնդրիցես, եւ զոր կամիցիս թէ նա ի քէն խնդրիցէ, ածել զմտաւ։

## ԻԸ

Երբեմն աղէտք անհնարինք ի վերայ հասեալ մեր բուռն լինին մեզ զբարեկամութիւնն ի բաց թողուլ. (քանզի յիմաստնոցն ընտանութենէ ի հասարակաց բարեկամութիւն զբանս դարձուցանեմ)։ Չարիք բարեկամացն բազում անգամ եւ ի նոսին եւ յայլսն եւս երեւին, բայց սակայն ծանականք նոցին ի բարեկամս անդր ընթանան։ Նմին իրի իսկ զայսպիսի բարեկամութիւնս պարտ եւ պատշաճ է լուծանել եւ դուն ուրեք զնոսին ի կիր արկանել. բայց սակայն, որպէս Կատոն ասէր, ոչ վաղվաղակի եւ արագ արագ արժան իցէ խզել եւ ի բաց ընկենուլ, այլ որպէս զհանդերձսն ոք քակիցէ, այնպէս մեղմով իմն եւ առ սակաւ սակաւ լուծանել զբարեկամութիւնն, եթէ ոչ անհնարին ինչ ապիրատութիւն դիպեալ իցէ, որպէս զի չիցէ ի դէպ եւ վայելուչ, մանաւանդ թէ եւ ոչ հնարաւոր ինչ չթողուլ զայն վաղվաղակի։

Իսկ եթէ բարք եւ յօժարութիւն բարեկամացն փոփոխեալ ինչ իցեն, որպէս բազում անգամ եւ յաճախագոյնս դիպիցի, եւ կամ յընկերհաշտութեան իրս բաժին եւ չմիաբանութիւն կայցէ, (քանզի որպէս եւ ասացին իսկ, ոչ զիմաստնոցն ինչ, այլ զհասարակաց բարեկամութենէ խօսիցիմ,) յայնժամ բազում զգուշութեան պէտք են, զի մի յորժամ բարեկամութիւնն լուծանիցի, յանհնարին թշնամութիւն դառնայցէ։ Քան-

զի չիք ինչ քան զայն ամօթոյ եւ ծանակութեան, յորժամ ընդ նմա՝ ընդ որում բազում ընդելական սիրով կեցեալ իցես, առնիցես մարտ պատերազմի: Ի բարեկամութենէ Կոս. Պոմպէի վասն իմ մեկնեցաւ Սկիպիոն, որպէս դուք իսկ ինքնին գիտէք. այլ վասն չմիաբանութեանն՝ որ յընկերհաշտութեանն էր, եւ ի Մետեղեայ եւս՝ ի մերմէ ընկերէն հեռանայր: Զերկոսին եւս բազում զգօնութեամբ գործեաց, ճոխութեամբն եւ ոչ սաստիկ ինչ դառնութեամբ ոգւոյ:

Վասն որոյ պարտ եւ պատշաճ է նախ փոյթ յանձին ունել, զի մի չմիաբանութիւն ինչ ի բարեկամացն միջի լինիցի. եւ եթէ սոյնպիսի ինչ դիպիցի, շիջեալ միայն բարեկամութիւն, եւ ոչ եթէ բնաւին ջնջեալ թուիցի: Եւ այնմ եւս արժան է ուշ ունել, զի մի յանհնարին թշնամութիւնս բարեկամութիւնք փոխեսցին, յորոց կռիւք եւ անէծք եւ թշնամանք ծնանիցին: Եթէ թեթեւագոյն ինչ թշնամանքն իցեն, հարկ է այնմ տանել, վասն մեծարանաց առաջին բարեկամութեանն. որպէս զի նա՝ որ զթշնամանսն ածէ, եւ ոչ որ զայն կրիցէն, պարտաւոր գտանիցի: Ամենայն չարեացս այսոցիկ եւ տառապանաց այս միայն զգուշութիւն է եւ սոյն դարման, մի վաղվաղակի եւ խառն ի խուռն զոք սիրել, եւ մի զչարժանաւորն սիրել:

Այլ արժանաւորք բարեկամութեան նոքա են՝ որ զպատճառսն՝ ոյր վասն սիրիցին, բովանդակեալ ունիցին: Արդարեւ այսպիսի ինչ սէր դուն ուրեք գտանիցի: Զի ամենայն ինչ որ երեւելին եւ պայծառագոյն է, դուն եւ անօսր եւս իցէ. եւ չիք ինչ դժուարին քան զգտանել այնպիսի ինչ՝ որ կատարեալ ամենեւին յիւրում ազգի իցէ: Սակայն բազումք եւ ի մարդկեղէն իրս զայն միայն լաւ համարին, որ շահաւէտն եւ արդիւնաշատ իցէ. եւ ի բարեկամացն՝ զնոսին առաւել սիրեն, որպէս ընդ անասունսն առնեն, յորոց յուսացեալ ակն ունին եթէ բազում օգտութիւնս գտանիցեն: Եւ այնպէս չունին զայն գեղեցիկ եւ զընտաբոյս բարեկամութիւն՝ զոր վասն նորին լաւութեանն արժան է խնդրել. եւ ոչ յիւրեանց անձանց կարեն առնուլ ի միտ, թէ քանիօն եւ որպիսի զօրութիւն այնր բարեկամութեան իցէ:

Վասնզի ոչ վասն այնորիկ ինչ իւրաքանչիւր ոք զիւր անձնն սիրէ, զի փոխարէնս յանձնէ իւրմէ վասն իւրոյ սիրոյն պահանջիցէ, այլ զի ի բնէ իսկ իւրաքանչիւր ոք իւրում անձինն սիրելի է։ Եթէ ոչ եւ բարեկամն եւս սոյնպիսի ինչ սիրով սիրիցի, չգտանի ուրեք բարեկամ ճշմարիտ։ Զի է իսկ նա իբրեւ երկրորդ ոք նոյն։ Եւ եթէ եւ յանասունս եւս սոյնպիսի սէր երեւիցի, որպէս ի թռչունսն եւ ի զեռունս ղօղակս, ի մարդընդել եւ ի վայրենի գազանս, որ նախ զանձինս սիրեն, քանզի ամենայն շնչաւորք այսպիսի բարս ընդաբոյս բարոյածինս ունին. երկրորդ անգամ զի խնդրեն եւ ցանկան յարել ի մի յիւրեանց ազգէն եւ ի նմանւոյ, զոր եւ բազում յօժարութեամբ առնեն, նմանեալք իմն սիրոյ մարդկան. որչափ եւս առաւել ի դէպ եւ պատշաճ իցէ զի եւ մարդիկ այսպիսի ինչ բարս ունիցին, որ անձամբ զանձինս սիրեն եւ խնդրեն եւս զայլ ոք՝ ընդ որում այնպէս զօդեալք խառնիցին, որպէս զի յերկուցն մի ինչ յօրինեալ կազմիցի։



ԻԲ

Այլ բազումք եւս իմն անպատեհս, չասացից անամօթագոյնս, այնպիսի բարեկամս ցանկան ունել, որպիսիք ոք ինքեանք չկարիցեն լինել. զոր բարեկամացն չտայցեն ինչ, զայն ի նոցանէ առնուլ ցանկան. այլ պարտ եւ պատշաճ է զի նախ ինքն լաւ եւ առաքինի լինիցի, եւ յայնժամ ապա իւրոց նմանեացն ելանիցէ ի խնդիր։ Յայսպիսեաց միջի արդի ճառեալ պնդութիւն բարեկամութեան մարթի հաստատել. յորժամ բարեաւք մտօք գիրկընդխառն ընդ միմեանս մարդիկն լինիցին, եւ նախ ցանկութեանցն՝ որոց այլք ի հարկի կան, գեր ի վերոյ լինիցին. երկրորդ անգամ՝ յիրաւունս եւ յարդարութեան վայելիցեն, եւ զամենայն ինչ վասն միմեանց յանձն առնուցուն, եւ զվայելուչսն եւ զուղիղս եւեթ յիրերաց խնդրիցեն, եւ ոչ միայն պաշտիցեն եւ սիրիցեն զմիմեանս, այլ եւ բազում պատկառանօք մեծարիցեն։ Վասնզի զբազմապայծառ զարդ վայելչութեան բարեկամութեանն բառնայ, որ զպատկառանս ի նմանէ ի բաց

բառնայցէ։ Այսոն որոյ կարի վնասակար նոցա մոլորու-
թիւնն է, որ կարծիցենն թէ համարձակ իցէ նոցա ի բա-
րեկամութեան զամենայն չարիս եւ զանօրէնութիւնս ան-
խտիր գործել։ Ընդստին ի բնութենէ շնորհեալ է բա-
րեկամութիւն օգնական եւ զօրաւիգն առաքինութեան,
եւ ոչ եթէ ընկեր եւ զուգողակից չարութեան. զի որով-
հետեւ չէ կարող առաքինութիւն միայն առանձինն, այ-
նոցիկ՝ որ բարձրագոյնքն եւ մեծամեծք իցեն՝ հասա-
նել, միացեալ եւ միաբանեալ ընդ այլում՝ հասանի-
ցէ. եւ եթէ կայցէ ինչ այսպիսի միաբանութիւն յոմանց
միջի, եւ կամ լեալ երբեք իցէ, եւ կամ թէ լինիցի,
կարի ազնուագոյն եւ երանելի եւ քան զամենայն ինչ
օգտակարագոյն մարդկեղէն բնութեան զայն համարելի է։

Այն այս միաբանութիւն է՝ որ զամենայն ինչ բովան-
դակեալ ունիցի, զոր մարդիկ արժանի ցանկանալոյ հա-
շուիցեն, զվայելչութենէ ասեմ եւ զփառաց, եւ զոգւոյն
հանդարտութենէ եւ զքաղցրութենէ. զի յորժամ սոքա
մօտ իցեն, երանելի են կեանք, եւ առանց սոցա չկարեն
լինել այնպիսիք։ Եւ քանզի այն կարի մեծ եւ քան զամենայն
ինչ ազնուագոյն է, եթէ հասանել այնմ կամիցիմք, պարտ
է առաքինութեանցն պատկառ կալ. զի առանց այնր ոչ
զբարեկամութիւնն, եւ ոչ այլ ինչ՝ որում ցանկանայ-
ցեմք, կարեմք ստանալ։ Իսկ եթէ զառաքինութեամբ
ոք անփոյթ արարեալ անցանիցէ, եւ համարիցի թէ ու-
նիցի բարեկամս, յայնժամ ի միտ առեալ ծանիցէ, թէ
վրիպեալ է, յորժամ անհնարին ինչ դիպօք բռնա-
դատիցի զփորձ առնուլ։

Յայն սակս (քանզի յաճախագոյնս պարտ է երկրոր-
դել) ի դէպ եւ պատշաճ է նախ քաջ դատել եւ ապա
սիրել, եւ ոչ յետ սիրելոյն դատաստան առնել։ Այլ
որպէս ի բազում իրս անհոգութեամբ կրեմք պատիժս,
նոյնպէս առաւել եւս յընտրելն զբարեկամս եւ ի մե-
ծարել։ Քանզի թեւր իմն եւ խոտորնակ խորհրդովք
վարիմք, եւ ընդունայնաջան լինիմք. զոր արգելու մեզ
հին առակն։ Զի շաղեալք պատեալք աստի եւ անտի
բազմաժամանակեայ ընտանութեամբ կամ երախտեօք,
յորժամ դժկամակութիւն ինչ հասանիցէ մեզ կրել,
անդէն վաղվաղակի զբարեկամութիւնն լուծանեմք։

## ԻԳ.

Դամին իրի որչափ մեծ եւ կարեւոր իրքն իցեն, նոյնչափ եպերելի նոցին անհոգութիւն է: Վասնզի յիրս մարդկեղէնս մի միայն է բարեկամութիւն, զորմէ ամենեքին վկայեն եթէ բազում պիտանութիւն եւ օգուտս ունի: Բազումք զառաքինութիւն դարովեն եւ ցոյցս իմն եւ պարծանս համարին. եւ կէսք զմեծութիւն անգոսնեն, որոց՝ քանզի սակաւուքն շատանան, լոկ եւ անհանդերձ կերակուրք եւ դոյզն ապաք բաւական են: Նա եւ զպատիւսն եւս՝ որոց ումանք անհնարին տենչանօք վառեալ ցանկանան, բազումք այնպէս իմն խոտեն եւ անարգեն, զի քան զամենայն ինչ ընդունայն եւ չնչենագոյն զայն համարին. սոյնգունակ եւ զայլ եւս ազգի ազգի իրս՝ որ ումանց սքանչելի եւ զարմանալի թուիցին, բազումք են որ առ ոչինչ գրեն: Բայց սակայն զբարեկամութենէ ամենեքին իսկ զնոյն ինչ կարծիս ի մտի ունին. եւ նոքա որ միջամուխք յընկերհաշտութիւնն իցեն, եւ նոքին որ ազգի ազգի տեղեկութեանց եւ հրահանգաց պարապիցեն. նաեւ նոքին՝ որոց զերծեալ ի բազմաթախանձ զբօսանաց՝ զիւրեանց իրս վճարիցեն. դարձեալ եւ նոքա եւս՝ որ անձնատուրք ի փափկութիւնս իցեն, համարին իմն եթէ չիցեն ինչ կեանք առանց բարեկամութեան, թէ միայն կամիցին ազատութեամբ կեանս կեալ: Վասնզի չգիտեմ զիարդ սպրդեալ մտանէ բարեկամութիւն ի վարս ամենայն մարդկան, եւ չառնու յանձն թէ չափ ինչ հասակաց անմասն ի նմանէ գտանիցի:

Թէպէտ եւ յայնպիսի ինչ դաժանութիւն եւ յանագորունութիւն հասեալ իցէ ոք, զի ի մարդկանէ փախչիցի եւ զնոսին խոտիցէ, որպէս զՏիմոնէ [19] ումեմնէ ասեն՝ թէ այսպիսի ոք լեալ իցէ յԱթենացւոց քաղաքի, բայց սակայն չէ նմա հնար չխնդրել զոք, որում զժանկաբեր թոյնս իւրոյ դաժանութեանն ի բաց թափիցէ: Այլ յայնժամ առաւելագոյն կարիցեմք խելամուտ այսմ լինել, եթէ զմի ոք ի մէնջ՝ ի բազմամբոխ բազմութենէ անտի մարդկան դիքն ի բաց բառնայցեն, եւ եդեալ յառանձինն ինչ վայրի, շնորհիցեն նմա

անդէն զլիութիւն եւ զկատարելութիւն ամենայնի՝ որոց մարդիկն ցանկանան, բայց միայն չտացեն թոյլ յիւրոց նմանեացն զոք տեսանել: Ո՞ ոք այնպէս խիստ եւ երկաթի իցէ, որ կարիցէ այնմ կենաց ժոյժ ունել. ո՞չ ապաքէն զվայելչութիւն ամենայն փափկութեանց հանցէ ի նմանէ միայնութիւնն:

Արդ ճշմարիտ է այն՝ զոր Արքիտ Տարենտացի[20], որպէս ինձ թուի, սովոր էր ասել, զոր եւ մեր ծերքն յիշատակէին յայլոց ծերոց ուսեալք: Եթէ ոք վերացեալ բարձրացեալ ի բարձրաբերձ բարձունս երկնից, պշուցեալ նայէր ընդ բնութիւնս աշխարհի եւ զմեծապայծառ վայելչութիւն աստեղացն նշմարէր, թերեւս չլինէին ինչ նմա քաղցր եւ հեշտական ամենայն զարմանալիքն. իսկ եթէ էր ոք ի միջի՝ որում զայն պատմէր, կարի քաղցրագոյն լինէր: Այսպէս բնութիւնն չախորժէ զմիայնութիւն, եւ ցանգ իբրեւ ի նեցուկ ինչ առ այլ ոք յենու, որ ի կարի մտերիմ բարեկամին կարի հեշտական է:



Այլ թէպէտ եւ այնչափ նշանօք յայտ առնէ բնութիւն զոր կամիցին եւ խնդրիցէ եւ ցանկանայցէ, սակայն չգիտեմ զիարդ խլանամք եւ զլսելիսն խնուցումք, եւ յորժամ ի նմանէն խրատիցիմք՝ չլսեմք յօժարութեամբ: Քանզի բազմապատիկ եւ բիւրազգի է բարեկամութեանն պիտանութիւն, եւ բազում պատճառք կասկածանաց եւ դառնութեան ընծայանան, յորոց փախչել եւ զնոսին ի բաց բառնալ եւ նոցին տանել գործ իմաստութեան է: Բայց սակայն պարտ եւ պատշաճ է զայն դառնութիւն բառնալ ի միջոյ, զի ճշմարտութիւն եւ հաւատարմութիւն կայցեն մնայցեն ի բարեկամութեանն: Քանզի բազում անգամ հարկ ի վերայ կայ խրատել զբարեկամս եւ կշտամբել. եւ նմա արժան է առնուլ յանձն բարեկամութեամբ, յորժամ բարեսէր մտօք լինիցի: Այլ չգիտեմ զիարդ ճշմարիտ իցէ այն՝ զոր ընտանի բարեկամս իմ՝ ի խաղսն անդ Անդրիացւոյն[21] ասաց.

ԱՐԲԱՆԵԿՈՒԹԻՒՆ՝ ԲԱՐԵԿԱՄՍ ԵՒ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ ԱՏԵԼՈՒԹԻՒՆՍ ԾՆԱՆԻ·

Ծանրատաղտուկ եւ դժնդակ է ճշմարտութիւն՝ եթէ ատելութիւն ի նմանէ ծնանիցի, որ թոյն դառնաթոյն է բարեկամութեան. այլ մեծարանք առաւել եւս դժնդակագոյնք են՝ որ յանցանացն ներիցեն, եւ տացեն թոյլ բարեկամացն դահավէժ դարահոս լինել։ Այլ քան զամենայն յանցանս մեծագոյն նորա յանցանքն են՝ որ զճշմարտութիւնն անգոսնիցէ, եւ մեծարանօք ի չար անդր գլորիցի։ Այլ արդ պարտ եւ պատշաճ է բազում փոյթ յանձին ունել, նախ զի մի ծանր եւ տաղտկալի խրատքն լինիցին. երկրորդ անգամ՝ զի յանդիմանութիւնքն առանց թշնամանաց իցեն. իսկ ի մեծարանսն (քանզի Տերենտեայ բանիւքն յօժարագոյն պաշտիմք) հեզ եւ համբոյր բարք մօտ կայցեն, եւ սուտակապաշտութիւն՝ որ օգնական եւ ձեռնտու է համօրէն չարեաց, ի բացեայ եւ մեկուսի. զի այն՝ ոչ բարեկամի միայն, այլ եւ ոչ ազատի ումեք արժանաւոր եւ վայելուչ է։ Քանզի այլազգ ընդ բռնաւորի եւ այլազգունակ ընդ բարեկամի կեանս վարեմք։

Բայց որոց լսելիքն փակեալ ճշմարտութեանն իցեն, եւ չկարիցեն ի բարեկամէն զճշմարիտն լսել, պարտ է զնոցա փրկութենէն հատանել զյոյս։ Քանզի ի մէջ յաճախագոյն բանից Կատոնի եւ այս եւս կարգեալ կայ թէ Թշնամիք անագորոյնք, քան զայնս ի բարեկամաց որ քաղցրագոյնքն երեւիցին, աւելագոյն երախտիս գործեն. զի նոքա ցանգ զճշմարիտն ասեն, իսկ սոքա՝ եւ ոչ ուրեք։ Այլ եւս իմն անպատեհագոյն այն է, զի որ խրատիցինն՝ ընդ այն որ տաղտուկն իցէ, չտաղտկանան, եւ որ չիցէն տաղտկալի, ընդ այն կարի տաղտկանան։ Չնեղին ինչ եւ չտառապին վասն յանցանացն զոր յանցանեն, այլ յորժամ կշտամբիցին, վաղվաղակի ըմբոստանան եւ դժկամակ եւս լինիցին. որոց պարտ եւ պատշաճ էր ընդ յանցանսն տրտմել եւ տխրել, եւ ընդ յանդիմանութիւնսն ուրախ լինել։



## ԻԵ

Նաեւ արդ որպէս ճշմարիտ բարեկամաց է զմիմեանս խրատել, եւ միումն համարձակութեամբ եւ առանց ինչ խիստ եւ դառն բանից զայն առնել, եւ միւսումն մտադիւրութեամբ ընդունել, եւ ոչ դիմադարձ ինչ եւ բանընդդէմ լինելով, սոյնգունակ պարտ եւ պատշաճ է համարել այնպէս, թէ ի բարեկամութեան չիցէ ինչ ախտ ժանտագոյն քան զսուտակասպասութիւն եւ զփաղաքշանս եւ զողոքանս. Թէպէտ եւ բեւր եւ ազգի ազգի անուամբ պարտ էր յայտ առնել զայս բիծ թեթեւամիտ եւ խաբեբայ մարդկան, որ զամենայն ինչ ըստ կամաց եւ ոչ ըստ ճշմարտութեան խօսիցին: Եւ որպէս ամենայն իրաց կեղծիք կարի վատթարագոյն է, քանզի կամակորէ իմն զճշմարտութիւնն եւ չտայ թոյլ այնմ խելամուտ լինել, սոյնպէս եւ ընդ բարեկամութեանն սաստիկ կռուի. զի ջնջէ իմն եւ ի բաց կորուսանէ զճշմարտութիւն, առանց որոյ անուն բարեկամութեանն չունի ինչ զօրութիւն: Զի եթէ բարեկամութեանն զօրութիւն յայն հաստատեալ իցէ, զի ի բազում ոգւոց մի ոգի եւեթ կազմիցի, զիարդ մարթ իցէ այնմ լինել, եթէ եւ ոչ ի միումն ցանգ եւ միշտ մի ոգի եւեթ գտանիցի, այլ պէսպէս եւ փոփոխական, մանաւանդ թէ եւ բազմապատիկ իսկ:

Քանզի զի՞նչ ինչ յեղյեղուկ եւ խոտորնակ քան զոգի այնր կայցէ, որ ոչ ըստ մտաց միայն այլ եւ ըստ դիմաց եւ ըստ ակնարկելոյ այլոց շրջշրջիցի:

ՈՒՐԱՆԱՑՑԷ ՈՔ. ՈՒՐԱՆԱՄ. ԱՍԻՑԷ ԱՅՈ. ԱՍԵՄ ԵՒ ԵՍ.
ՔԱՆԶԻ ԶԱՅՍ ԻՆՁ ԵԴԻ Ի ՄՏԻ ԻՄՈՒՄ
ԱՄԵՆԱՅՆԻ ՈՂՈՔԱՆՕՔ ՀԱՒԱՆԵԼ.

որպէս նոյն Տերենտիոս ասաց, այլ առեալ զերեսս Գնաթոնի: Զայսպիսի բարեկամութիւն ի կիր արկանել ամենեւին թեթեւութեան է: Իսկ եթէ բազումք Գնաթոնի նմանագոյնք իցեն, աստիճանօքն եւ բախտիւ եւ համբաւով բարձրագոյնք, այնպիսեացն սուտակասպասութիւն կարի դժնդակագոյն է, այնու զի եւ ճոխութիւն եւս յընդունայնութիւնն յաւելուն: Բայց սակայն մարթ

իսկ է այնպէս զսուտակապաս բարեկամն ջանիւք եւ հոգաբարձութեամբ ի ճշմարտէն ընտրել, որպէս զայլ ամենայն իրս պաճուճեալս ընտրիցեմք: Եւ տխմարաց եւս եւ տգիտաց կարի դիւրին է ընտրել եւ կալ ի վերայ թէ որչափ ինչ ընդհատ իցէ գռեհկին, այսինքն թեթեւամտին եւ սուտակապաս, ի հաստատնոյն եւ ի հաւատարմէն, եւ յայնմանէ՝ որ զճշմարիտն խօսիցի: Որպիսի բանս ողոքս բարբառէր սակաւիկ մի յառաջագոյն Կ. Պապիրիոս բդեշխն ի լսելիս ժողովրդեանն, յորժամ կամէրն օրէնս դնել վասն զաւակապետութիւնն միւսանգամ հաստատելոյ. հաւանեցուցանք զժողովուրդն չլինել ձեռնամուխ յայնպիսի ինչ: Նոյն չասացից ինչ զանձնէ, իսկ զՍկիպիոնեայ խօսեցայց կամակարագոյնս. որչափ ինչ նորա ցածութիւնն էր, որպիսի շքեղութիւն ի բանսն, որպէս զի զօրաւոր ազգին Հռոմոց մանաւանդ եւ ոչ ընկեր եւ քաղաքացի ասէր դք: Նոյն դուք իսկ անդէն մօտ էիք, եւ ճառքն առ ձեռս կան: Այսպէս օրէնք ժողովրդեան՝ ժողովրդեան վճռովքն մերժեցան: Նոյն դարձայց եւ առ իս. յիշէք իսկ եթէ ի բդեշխութեան Կ. Մաքսիմեայ եղբօր Սկիպիոնի եւ Ղ. Մանկինեայ, որչափ ինչ հաճոյ ռամկին լինէին օրէնք Կ. Գ. Լիկինեայ Կրասեայ, զոր վասն քրմութեան կարգէր. քանզի ընտրութիւն ընկերաց քրմացն յիշխանութիւն ժողովրդեանն ապաստան լինէր: Սոյն այս այր նախ սկիզբն առնէր դառնալոյ ի ժողովուրդն կոյս յորժամ հրապարակախօսն լինէր: Բայց սակայն զնորա հաճոյական բանսն՝ կրօնք դիցն անմահից դիւրեաւ իմն յաղթէին մերով պաշտպանութեամբ: Եւ այն յիմում հազարապետութեան գործեցաւ, հինգամեայ ժամանակօք յառաջագոյն քան զժամանակս իմոյ բդեշխութեան: Նմին իրի իսկ՝ առաւել արդեամբք քան իմով ինչ ճոխութեամբ գտին իւրքն պաշտպանութիւն:

## ԻԶ.

Եթէ ի տեսիլս թատերց, այս ինքն ի ժողովս ժողովրդոց, ուր բազում տեղիք կցկցեալք եւ սուտերականք են, եւ ճշմարտութիւն եւս զիւր զօրութիւն ունիցի, յորժամ յայտնիցին եւ մեկնիցի, զի՞նչ ինչ ի բարեկամութեանն արժան իցէ լինել, որ ամենեւին իսկ եւ բնաւին ի կշիռ ճշմարտութեանն կշռի. յորում, որպէս ասենն, եթէ ոչ բաց զսիրտն գտանիցես, եւ զքո եւս ցուցանիցես, չգտանիցի ինչ հաւատարիմ եւ ոչ ստոյգ ինչ եւ հաստատուն. չկարիցես սիրել զոք եւ ոչ սիրելի ումեք լինել. քանզի չես ինչ տեղեակ թէ ո՛րչափ ինչ ճշմարտութեամբ այն լինիցի: Սուտակապատութիւնն թէպէտ եւ վնասակար իցէ, չկարէ մեղանչել ումեք բայց այնմ՝ որ զայն ընդունիցի, եւ նովին ուրախ լինիցի. որով յայտ է եթէ նա միայն մտադիւրագոյն լսիցէ մարդահաճոյից եւ սուտակապատաց՝ որ զիւր անձնն սիրիցէ, եւ անձամբ զանձն կարի իմն գովիցէ եւ գգուիցէ:

Արդարեւ սիրէ զանձն առաքինութիւն, քանզի կարի քաջ զանձն ճանաչէ, եւ գիտէ հաւաստեաւ թէ ո՛րչափ ինչ սիրելի իցէ: Բայց ես ոչ եթէ զառաքինութենէ այժմ խօսիցիմ, այլ զկարծեաց առաքինութեանն, քանզի բազումք ոչ այնչափ առաքինաւորք ցանկան լինել, որչափ այնպիսիք երեւել: Զայսպիսիսն սուտակապատութիւն ուրախ առնէ. որոց եթէ մատուցանիցին բանք ինչ պաճուճեալք, զսնոտի ճառսն զայնոսիկ համարին վկայութիւն անձանցն գովութեան: Ապա չէ ինչ այն բարեկամութիւն, յորժամ մին չկամիցի զճշմարիտն լսել, եւ միւսն ի ստել կազմ կայցէ: Եւ ոչ ի ծաղր ինչ ածէին զմեղ ի տեսիլս խաղուց փաղաքշանք սեղանաբոյծ մարդկան, եթէ չգտանէր ի նոսին զօրական սնապարծ եւ անձնգով[**]:

ԹԷ ԱՊԱՔԷՆ ՄԵԾ ԻՆՁ ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ ՄԱՏՈՒՍՑԷ ԻՆՁ ԹԱՅԻՍ.

Շատ իսկ էր տալ պատասխանի, թէ արդարեւ շնորհակալութիւն մեծ մատուցէ, այլ նա անբաւս եւ անչափս առէ: Հանապազ ածեցուցեալ ստուարացուցանէ սուտակապատն զայն ինչ՝ զոր նա՝ զորոյ զմիտսն կամիցի հաճել, կամի թէ մեծ իցէ:

Նմին իրի թէպէտ եւ այն հրապուրիչ ընդունայնութիւն առ նոսա միայն մուտ գտանիցէ որ նմին կեր արկանիցեն եւ զնոյն հրաւիրեալ կոչիցեն․ բայց սակայն եւ զհաստատունսն եւս պարտ է խրատել, այնմ իմն ցանգ ուշ ունել, զի մի նենգաւոր սուտակասպասութիւն յանկարծակի ի վերայ հասեալ զնոսին ըմբռնիցէ։ Վասնզի չիք ոք որ չտեսանիցէ զյայտնի սուտակասպասն, բայց նա միայն որ կարի ոք թանձրամիտ իցէ։ Այլ զի մի նենգաւորն այն եւ խորամանկ գաղտ սպրդեալ մտանիցէ, բազում զգուշութեան եւ յաճախագոյն փութոյ պէտք են։ Վասնզի չէ ինչ դիւրին զայն ճանաչել․ բազում անգամ մինչ հակառակն կայցէ, ողջէ․ եւ է ուրեք զի այնպէս իմն ցուցանէ թէ ընդ հակառակս մտեալ եւ ի կռիւ յարուցեալ իցէ․ սակայն եւ այն գործ սուտակասպասութեան է․ յայն սակս վաղվաղակի տայ ձեռս եւ առնու յանձն զպարտութիւն․ զի որ նորա փաղաքշանօքն խաբիցի, կարի կորովի միտք զանձն համարիցի։ Այլ զի մի այն դիպիցի՝ պարտ եւ պատշաճ է ցանգ սկսել եւ հանապազ զգոյշ լինել․ որպէս եւ յԵպիկղերն կայ թէ
ՔԱՋ ԻՍԿ ԶԱՂ ԵՒ ԾԱՆԱԿ ԱՐԱՐԷՔ ԱՅՍՕՐ ԱՌԱՋԻ ԻՄ ԶԱՄԵՆԱՅՆ ԳՈՒՍԱՆԱԿԱՆ ԾԵՐՍ ԱՆՄԻՏՍ·

Զի եւ յառասպելսն եւս քան զամենայն կերպարանս անմտագոյն՝ կերպարանք ծերոց աղճատելոց եւ միամտաց է։ Այլ չգիտեմ զիարդ ի բարեկամութենէ արանց կատարելոց, այս ինքն իմաստնոցն (զայնմ իմաստութենէ ասեմ, որում մարդիկ կարիցեն հասանել) ի թեթեւագոյն բարեկամութիւն ճառքս խոտորեցան։ Թէ այնպէս իցէ, դարձցուք անդրէն ի մեր բանս, եւ զնոյն բովանդակեսցուք։



Առաքինութիւնն, Փաննիոս եւ Մուկիոս, առաքինութիւնն ինքնին ի գլխովին բարեկամութեանց առիթ լինի, եւ զնոսին պահէ․ քանզի ի նմա իսկ է միաբանութիւն ամենայն իրաց, ի նմին հաստատութիւն, ի նմին անմեղկութիւն, որ յորժամ յայտ զանձն առնիցէ, եւ զիւր մեծապայծառ լոյսն ցուցանիցէ, եւ յայլսն եւս զնոյն

Հայեցեալ տեսանիցէ, երթայ մօտ ի նա եւ ընդ նմին գիրկընդխառն լինի, որով նոցա սէրն եւ բարեկամութիւն վառեալ բորբոքի. քանզի եւ երկաքին եւս ի սիրելոյ անուանին։ Իսկ սիրելն չէ այլ ինչ, բայց միայն խնամ ունել այնմ՝ զոր սիրեսն, առանց ինչ կարօտութեան եւ առանց օգտութիւնս խնդրելոյ։ Սակայն եւ օգուտն եւս ի բարեկամութենէն ծաղկեալ բղխէ, թէպէտ եւ չիցես պնդեալ զնորին զհետ։ Այնպիսի ինչ գթով մեք ի մերում պատանեկութեան զհինօրեայ ծերոն զայնոսիկ զԼ. Պաւղոս, զԿատոն Երէց, զԿ. Գաղղոս, զՊ. Նազիկա, եւ զՏի. Գրակքոս զաներ Սկիպիոնեայ, սիրեցաք։ Եւ սոյն այս առաւել յայտնագոյն ի մէջ զուգականաց, որպէս յիմ եւ ի Սկիպիոնեայ, ի Գ. Փուրիոսի եւ ի Պ. Ռուպիղեայ եւ ի Սպ. Մումմիոսի միջի երեւիցի։ Այնգունակ եւ մեք ծերքս պատանեացն սիրով ուրախ լինիմք. որպէս ձեր եւ Կ. Տուբերոնի սիրովն։ Նոյնպէս եւ Կ. Հռուտիղեայ պատանւոյ, եւ Ա. Վիրգինեայ մանկան ընտանութիւն կարի զիս ուրախ առնէ։ Քանզի այս ինչ պայման է կենաց եւ բնութեան մերոյ, զի ազգի ազգի տիք հասակաց զմիմեանս յաջորդիցեն. այլ առաւել ցանկալի այն է, զի ընդ զուգականաց՝ ընդ որս զլոյսն տեսեր, եւ ի վախճան կենաց հասանիցես։

Եւ քանզի անկայականք եւ անհաստատականք են իրք մարդկորէնք, պարտ եւ պատշաճ է մարդկան սէր ընդ միմեանս ունել։ Զի ի բառնալ սիրոյ եւ խնամոց, ամենայն քաղցրութիւն ի կենաց մարդկան ջնջեալ կորուսեալ է։ Թէպէտ եւ վաղ բարձաւ յինէն Սկիպիոն, սակայն կեայ, եւ ցանգ կեցէ. քանզի զնորա զառաքինութիւնն սիրեցի՝ որ շիջաւ իսկ ոչ։ Ոչ իմոց աչաց միայն առաջի կայ, որ միշտն նմա մօտ էի, այլ եւ յետնոցն եւս անուանի եւ բարենշան լինիցի։ Չգտանիցի ոք որ մեծամեծ ինչ իրս կամիցի վճարել, եւ չհամարիցի եթէ պարտ իցէ նմա զնորին յիշատակ եւ զպատկեր իւր առաջի դնել։ Արդարեւ իսկ յազգի ազգի իրս՝ զորս բախտն եւ կամ բնութիւն ինձ ետուն, չիք ինչ զոր ընդ Սկիպիոնեայ բարեկամութեանն կարիցեմ կշռեալ համեմատել։ Ի սմին վասն ընկերհաշտութեանն հաւանութիւն, ի սմին խորհուրդք զառտնին իրաց. ի նմա բազում հան-

Նմին իրի թէպէտ եւ այն հրապուրիչ ընդունայնութիւն առ նոսա միայն մուտ գտանիցէ որ նմին կեր արկանիցեն եւ զնոյն հրաւիրեալ կոչիցեն. բայց սակայն եւ զհաստատունսն եւս պարտ է խրատել, այնմ իմն ցանգ ուշ ունել, զի մի նենգաւոր սուտակապաստութիւն յանկարծակի ի վերայ հասեալ զնոսին ըմբռնիցէ: Վասնզի չէք ոք որ չտեսանիցէ զյայտնի սուտակապատն, բայց նա միայն որ կարի ոք թանձրամիտ իցէ: Այլ զի մի նենգաւորն այն եւ խորամանկ գաղտ սպրդեալ մտանիցէ, բազում զգուշութեան եւ յաճախագոյն փութոյ պէտք են: Վասնզի չէ ինչ դիւրին զայն ճանաչել. բազում անգամ մինչ հակառակն կայցէ, ողոքէ. եւ է ուրեք զի այնպէս իմն ցուցանէ թէ ընդ հակառակս մտեալ եւ ի կռիւ յարուցեալ իցէ. սակայն եւ այն գործ սուտակապատութեան է. յայն սակս վաղվաղակի տայ ձեռս եւ առնու յանձն զպարտութիւն. զի որ նորա փաղաքշանօքն խաբիցի, կարի կորովի մտօք զանձն համարիցի: Այլ զի մի այն դիպիցի՝ պարտ եւ պատշաճ է ցանգ սկել եւ հանապազ զգոյշ լինել. որպէս եւ յԷպիկղերն կայ թէ

ՔԱՋ ԻՍԿ ՁԱՂ ԵՒ ԾԱՆԱԿ ԱՐԱՐԷՔ ԱՅՍՕՐ ԱՌԱՋԻ ԻՄ
ԶԱՄԵՆԱՅՆ ԳՈՒՍԱՆԱԿԱՆ ԾԵՐՍ ԱՆՄԻՏՍ·

Զի եւ յառաւելն եւս քան զամենայն կերպարանս անմտագոյն՝ կերպարանք ծերոց աղճատելոց եւ միամտաց է: Այլ չգիտեմ զիարդ ի բարեկամութենէ արանց կատարելոց, այս ինքն իմաստնոցն (զայնմ իմաստութենէ ասեմ, որում մարդիկ կարիցեն հասանել) ի թեթեւագոյն բարեկամութիւն ճառքս խոտորեցան: Թող այնպէս իցէ, դարձցուք անդրէն ի մեր բանս, եւ զնոյն բովանդակեսցուք:

## ԻԷ

Առաքինութիւնն, Փաննիոս եւ Մուկիոս, առաքինութիւնն ինքնին ի գլխովին բարեկամութեանց առիթ լինի, եւ զնոսին պահէ. քանզի ի նմա իսկ է միաբանութիւն ամենայն իրաց, ի նմին հաստատութիւն, ի նմին անմեղկութիւն, որ յորժամ յայտ զանձն առնիցէ, եւ զիւր մեծապայծառ լոյսն ցուցանիցէ, եւ յայլսն եւս զնոյն

հայեցեալ տեսանիցէ, երթայ մօտ ի նա եւ ընդ նմին զիրկընդխառն լինի, որով նոցա սէրն եւ բարեկամութիւն վառեալ բորբոքի. քանզի եւ երկոքին եւս ի սիրելոյ անուանին: Իսկ սիրելն չէ այլ ինչ, բայց միայն խնամ ունել այնմ՝ զոր սիրեն, առանց ինչ կարօտութեան եւ առանց օգտութիւնս խնդրելոյ: Սակայն եւ օգուտն եւս ի բարեկամութենէն ծաղկեալ բղխէ, թէպէտ եւ չիցես պնդեալ զնորին զհետ: Սոյնպիսի ինչ գթով մեք ի մերում պատանեկութեան զհինօրեայ ծերսն զայնոսիկ զՊ. Պաւղոս, զԿատոն Երէց, զԿ. Գաղղոս, զՊ. Նազիկա, եւ զՏի. Գրակքոս զաներ Սկիպիոնեայ, սիրեցաք: Եւ սոյն այս առաւել յայտնագոյն ի մէջ զուգակականաց, որպէս յիմ եւ ի Սկիպիոնեայ, ի Պ. Փուրիոսի եւ ի Պ. Ռուպիղեայ եւ ի Սպ. Մումմիոսի միջի երեւիցի: Սոյնգունակ եւ մեք ծերքս պատանեացն սիրով ուրախ լինիմք. որպէս ձեր եւ Կ. Տուբերոնի սիրովն: Նոյնպէս եւ Կ. Հռուտիղեայ պատանւոյ, եւ Ա. Վիրգինեայ մանկան ընտանութիւն կարի զիս ուրախ առնէ: Քանզի այս ինչ պայման է կենաց եւ բնութեան մերոյ, զի ազգի ազգի տիք հասակաց զմիմեանս յաջորդիցեն. այլ առաւել ցանկալի այն է, զի ընդ զուգակականաց՝ ընդ որս զլոյսն տեսեր, եւ ի վախճան կենաց հասանիցես:

Եւ քանզի անկայականք եւ անհաստատականք են իրք մարդկորէնք, պարտ եւ պատշաճ է մարդկան սէր ընդ միմեանս ունել: Զի ի բառնալ սիրոյ եւ խնամոց, ամենայն քաղցրութիւն ի կենաց մարդկան ջնջեալ կորուսեալ է: Թէպէտ եւ վաղ բարձաւ յինէն Սկիպիոն, սակայն կեայ, եւ ցանգ կեցէ. քանզի զնորա զառաքինութիւնն սիրեցի՝ որ շիջաւ իսկ ոչ: Ոչ իմոց աչաց միայն առաջի կայ, որ միշտն նմա մօտ էի, այլ եւ յետնոցն եւս անուանի եւ բարենշան լինիցի: Չգտանիցի ոք որ մեծամեծ ինչ իրս կամիցի վճարել, եւ չհամարիցի եթէ պարտ իցէ նմա զնորին յիշատակ եւ զպատկեր իւր առաջի դնել: Երդարեւ իսկ յազգի ազգի իրս՝ զորս բախտն եւ կամ բնութիւն ինձ ետուն, չիք ինչ զոր ընդ Սկիպիոնեայ բարեկամութեանն կարիցեմ կշռեալ համեմատել: Ի սմին վասն ընկերհաշտութեանն հաւանութիւն, ի սմին խորհուրդք զառտնին իրաց. ի նմա բազում հան-

գիտաս ուրախարարս գտի: Այլ ոչ փոքու ինչ իւիք, որչափ յիշեմ, դժկամակ զնա արարի. չէ իմ լուեալ ի նմանէ ինչ մի ի չախորժականացն: Մի տուն էր մեր եւ կերակուր նոյն, եւ այն հասարակաց: Ոչ միայն ի զինուորութեանն, այլ եւ ի պանդխտութիւնս եւ ի զբօսանս շինից եւ ագարակաց ցանգ ի միասին էաք:

Ուր զի՞նչ զփութոյն յուսումն եւ ի ծանօթութիւն ազգի ազգի իրաց ասիցեմ, յորում հեռացեալ յաչաց ամբոխին, զնաւ ժամանակս մեր դատարկս անցուցաք: Եթէ յուշարար յիշատակք իրացն այնոցիկ ընդ նմին բարձեալ կորնչէին, չկարէի ժոյժ ունել անձկոյ առն ընտանւոյ եւ ջերմաջերմ սիրելւոյ: Բայց սակայն չեն ինչ շիջեալ եւ կորուսեալ. մանաւանդ թէ աճեալ մնանին ցանգոյդ խորհրդովք եւ յիշատակօք: Այլ եթէ զրկեալ եւս յայնցանէ գտանէի, սակայն բազում սփոփութիւն հասակ ծերութեան իմոյ ինձ մատուցանէր. քանզի չէ ինձ մարթ բազում ժամանակս սովին անձկով անձկաբէկ լինել: Իսկ որ ինչ սակաւաժամանակեայն է, պարտի եւ համդուրժական եւս լինել, թէպէտ եւ մեծ եւս իցէ:

Զայս ինչ զբարեկամութենէ կարէի ասել: Ուր թելադիր ձեզ լինիմ, զի այնպիսի մեծարոյ կարծիս զառաքինութենէ ունիցիք, քանզի բարեկամութեանն չէ մարթ առանց նորա լինել, որպէս զի քան զնա այլ ինչ չհամարիցիք պատուականագոյն քան զբարեկամութիւն:



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ

1. Զայնմ պատմուճանէ ասէ, զոր Հռոմայեցւոց պատանիքն զգենուին, յորժամ յԺԷ երորդ ամ հասակի հասանէին. քանզի մինչեւ ցայն ամս որդիք ազատաց զեզերածիրանին կրէին։

2. Սոկրատես է այրն, զորմէ այսպէս ասէր Հրամանն պատասխանւոյ Ապողոնեայ.

*Σοφὸς Σοφοκλῆς, σοφώτερος δ' Εὐριπίδης*
*Ἀνδρῶν δ' ἁπάντων Σωκράτης σοφώτατος.*

Իմաստուն Սոփոկլէս, առաւել իմաստուն Եւրիպիդէս,
Քան զամենայն մարդիկ Սոկրատէս իմաստնագոյն։

3. Աշակերտք Սոկրատեայ վարդապետութեանն բովանդակութիւն համօրէն բարութեանց զառաքինութիւնն դնէին. նմին իրի եւ ասէին իսկ եթէ որ զառաքինութեամբն գայցէ, ցանգ բարեչէն երջանիկ լինիցի, թէպէտ եւ յերկրաւոր բարութեանց թափուր իցէ։

4. Հռոմայեցւոց օրէնք զԽԲ ամեանս Հրամայէին կացուցանել բդեշխս. այլ Սկիպիոն ԼԶ ամաց զայն իշխանութիւն ետ։

5. Զկարքեդոնացւոց քաղաքն յԱփրիկեցւոց աշխարհին, եւ զՆումանտիա ի Սպանիացւոց աշխարհին։

6. Քանզի առանց ինչ խօթութեան ի մուծ գիշերի ի կենաց պակասեր ամաց ԾԶից։

7. Պիւթագորաս եւ նորին աշակերտք զատորին կողմանս Իտալացւոց աշխարհին՝ որ մեծ Յունաց աշխարհ կոչէր, ուր այժմ Նէապոլսեցւոց աշխարհն կայ, հրահանգէին։

8. ԶՍոկրատեանցն կամք յայս տանել, որք ասէին թէ իմաստունք միայն կարեն լինել առաքինիք։

9. Եմփեդոկլէս աշակերտեցաւ է՝ Պիւթագորայ աշակերտս, զորմէ պատմէ Որատիոս այսպիսի ինչ, եթէ ցանկացեալ նորա ի համար դիցն խառնել, բարձրեալ զանձն ի վիհ Եթնայ բորբոքելոյ տարար։ Քանզի այնպիսի ինչ կարծիք էին առմին, եթէ՝ որ յանկարծակի չէք յաչաց լինիցի. ի բազմերան կետնս Ողիմպեայ ընդ դիսն վայելիցէ։ Որատ. վասն արուես. պոետ։

10. Որեստէս ուստր Ագամեմնոնայ վասն քինախնդիր հօրն մահուան լինելոյ՝ զիւր մայրն սպանանէր, եւ գէմ եղեալ տարագէմ ի Քերոնեսոս Տաւրիացւոց գնայր։ Անդ մինչդեռ կամէրն զԱնահտական պատկերն գողանալ, անկանէր ի բուռն, եւ ի մահ ի թագաւորէն դատապարտէր։ Այլ Պիղադէս նորին կորեւոր բարեկամ, վասն զնա ի մահուանէն թափելոյ, մատուցեալ ասէր ցթագաւորն՝ որում չէր ծանօթ Որեստէս, թէ ինքն Որեստն իցէ, զի փոխանակ նորա մեռցի։ Կիկ. Ենի. Յոբնալ։

11. Քանզի Հռոմայեցիք amor զսէրն կոչէին եւ amicitia զբարեկամութիւնն։

12. Տարկուինոս Ամբարտաւան հուսկ յետոյն թագաւոր Հռոմայեցւոց, վասն իւրոյ անպարկեշտութեանցն առաւել ատելեցուն լինէր, եւ ի ձեռն Բրուտեայ ի թագաւորութենէ մերժէր, եւ այնուհետեւ հիւպատոս փոխանակ թագաւորաց Հռոմայեցիքն կացուցանէին։

13. Կ. Գարինոս եւ Կ. Կասսիոս ռամկապետք օրէնս կարգէին զի ի հասարակաց խորհուրդս իւրաքանչիւր ոք զիւր կարծիս ի տախտակս գրոշմեալ ցուցանիցէ խորհրդականաց, եւ որ ինչ ի խորհուրդն յայնոսիկ հաստատէին, անուանեալ կոչէին Օրէնք տախտակաց։

**14**. Կորիողանոս իբրեւ տարագիր ի Հայրենի աշխարհէն լինէր, զՎոլսկացիսն ի մեծ պատերազմի ի վերայ Հռոմայեցւոցն յարուցանէր։ Նոցա զօրքն՝ որոց ինքն զօրավար եկաց, զՀռոմ պաշարեաց եւ ի տագնապի զՀռոմայեցիսն կացոյց։ Աղաչանք մօր նորա եւ կնոջն՝ զերծանէր քաղաքն։

**15**. Թեմիստոկլէս յետ յաշխարհէն վտարելոյ, ձեռն ետ յԱրտաշէս արքայ Պարսից՝ խնդրել ի նմանէ զօրութիւն օգնականութեան, զի զՀամօրէն Յունաց աշխարհ ընդ նորա ձեռամբ նուաճիցէ։ Այլ չեւ ձեռնամուխ ի գործն եղեալ՝ տխրաւ ջեռանէր եւ մեռանէր ի նմին։ Այսպէս զայն ձեւ Թուկիդիդէս. բայց այլք այլազգունակս իմն պատմեն, եթէ իբրեւ ետես թէ չէ տեղի զոր խոստացաւ կատարել, անձին արար։

**16**. ԶՈրփիզոս եւ զՄուսէոս, զՆեգեսոս եւ զՊիոս եւ զՎիւրոս կամ յայս առնել, որ ի Հավուաց եւ յանդէորդաց ոնան։

**17**. Նէոպտողեմոս՝ որ Թարգմանի Նոր մարտիկ, անուն յորջորջանաց Պիւռոսի որդւոյ Աքիլլեայ է, քանզի ի տխեղծ հասակի ի Տրովադական պատերազմն չոգաւ։

**18**. Ղիւկոմեդէս թագաւոր էր Սկիրացւոց, որում զԱքիլլէս՝ մայր նորին ետ պահել ի հանդերձս կանացիս, զի մի ի Տրովական պատերազմն գնասցէ։

**19**. Տիմոն աթենացի թշնամի համօրէն մարդկութեանն էր, եւ չխօսէր ընդ ումեք. նմին իրի եւս Μισάνθρωπος յԱթենացւոց անուանէր, որ թարգմանի Հայերէն Մարդատեաց։

**20**. Արքիտա տարենտացի անդամն ի Պիւթագորայցն փիլիսոփայս, օրենսդիր եւ յանձանձիչ իւրոյ աշխարհին եղեւ։

**21**. Անդրիացին, այս ինքն կին մի յԱնդրոս կղզւոյ, խաղ է ի զուարճանական խաղուցն Տերենտեայ։

**22**. Զօրական անապարծ եւ անձնդով՝ զԹրասոնն ասէ, զոր Տերենտիոս յիւրում խաղուն ընծայեցոյց. քանզի ցանց զմեծամեծ ինչ իրաց՝ զորս չէրն գործեալ՝ բարբառէր, եւ զնոսա միայն իւր բարեկամ համարէր՝ որ զնա յարգեալ գովէին։



